Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք։

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 18 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1952

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս 2—52—78

# ԸՆԿ. ԳՐ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ ՀԱՇՎԵՏՈՒ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ Կ(Բ)Պ XVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՍԻՆ

## I

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՎԻԹԽԱՐԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ԴՐԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

*Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի 15-րդ համագումարից հետո անցել է մեկ և կես տարի։ Այդ ժամանակաշրջանը եղավ Սովետական Միության նոր, հուժկու զարգացման ժամանակաշրջան։ Հաջողությամբ ավարտելով ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման հետպատերազմյան հնգամյա պլանը, մեր երկիրը նոր, խոշոր հաջողություններ ձեռք բերեց*

խաղաղ շինարարության, կոմունիստական հասարակարգի կառուցման ճակատում։

Արդյունաբերությունը 1951 թվականի պլանը կատարեց 103,5 տոկոսով։ Արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցման 1951 թվականի համար սահմանված պլանը գերակատարված է։ Արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցումից ստացված տնտեսումը 1951 թվականին կազմեց ավելի քան 26 միլիարդ ռուբլի։ Արտադրության մեջ աշխատող-բանվորների աշխատանքի արտադրողականությունը 1951 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, աճեց 10 տոկոսով։

1952 թվականի առաջին եռամսյակի պլանը արդյունաբերությունը կատարեց 100,4 տոկոսով, երկրորդ եռամսյակինը՝ 102 տոկոսով։

Սոցիալիստական արդյունաբերության հաջողությունները հնարավորություն տվին լայն մասշտաբներով իրականացնելու արտադրական պրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը արդյունաբերության մեջ,



աշխատատար պրոցեսների հետագա մեքենայացումը կոլտնտեսություններում ու սովխոզներում և բեռնման-բեռնաթափման աշխատանքների լայն մեքենայացումը ինչպես արտադրության մեջ, այնպես էլ ապրանքները սպառման վայրերը փոխադրելու ասպարեզում։

Այդ ժամանակաշրջանում խոշոր հաջողություններ են ձեռք բերվել նաև գյուղատնտեսական արտադրության մեջ։

Կոլտնտեսություններում և սովխոզներում, բերքատվության աճմանը զուգընթաց, տեղի էր ունենում ցանքատարածությունների, առաջին հերթին ցորենի ու տեխնիկական կուլտուրաների՝ բամբակի, շաքարի ճակնդեղի և այլ ցանքատարածությունների հետագա ընդարձակում։

1951 թվականին տեղի էր ունենում անասնաբուծության հետագա աճ և անասնաբուծության մթերատվության ավելացում։

Կատարելագործված գյուղատնտեսական մեքենաների և սովետական գյուղատնտեսական գիտության նվա-

ճումների լայն կիրառումը ապահովեց գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության հետագա աճը։

Վերջին տարիների ընթացքում Սովետական Միության ձեռք բերած նշանակալից նվաճումներից մեկը կոմունիզմի վիթխարի կառուցումների, շինարարության աշխատանքների լայն ծավալումն է և Վլադիմիր Իլյիչ Լենինի անվան Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքը, Ցիմլյանսկայայի հիդրոկայանն ու առաջին հերթի իրրիգացիոն ջրանցքները ժամկետից շուտ շահագործման հանձնելը։

Ստալինյան դարաշրջանի այդ հոյակապ կառույցի շարք մտնելը խոշորագույն քայլ է մեր երկրում բնակչության համար գյուղատնտեսական մթերքների և արդյունաբերության համար հումքի առատություն ստեղծելու գործում, էլ չենք ասում այն նշանակության մասին, որ Վոլգա-Դոն ջրանցքն ունի մասսայական բեռները՝ հացահատիկը, ածուխը, անտառանյութը և այլ բեռներ մեր անծայրածիր Հայրենիքի հարավից դեպի հյու-



սիս և հյուսիսից դեպի հարավ փոխադրելու համար։

Մեր պարտիայի ստալինյան քաղաքականությունը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման հիմքի վրա ապահովեց սովետական ժողովրդի նյութական բարեկեցության անընդհատ աճը։

Արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականության սիստեմատիկ վերելքը և արտադրանքի ինքնարժեքի իջեցումը Սովետական կառավարությանը հնարավորություն տվին իրականացնելու մասսայական սպառման առարկաների մանրածախ գների հետագա իջեցում, որը հասցրեց սովետական ռուբլու կուրսի նոր բարձրացման, բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձի և կոլտնտեսականների եկամուտների աճման։

Եթե դրան ավելացնենք Սովետական կառավարության կողմից իրականացված սոցիալ-կուլտուրական միջոցառումները, ապա բոլորի համար ակնհայտ կլինի, թե ինչպես տարեցտարի անշեղորեն բարձրանում է

սովետական ժողովրդի կենսական մակարդակը։

Մեր երկրի բնակչության նյութական բարեկեցության աճմանն ուղեկցում է սովետական մարդկանց կուլտուրական մակարդակի սիստեմատիկ բարձրացումը։

Մարքսիզմ-լենինիզմի գաղափարների լայն պրոպագանդան, պարտիական կազմակերպությունների անդուլ պայքարը իդեոլոգիական ճակատում մարքսիզմ-լենինիզմի ամեն տեսակ խեղաթյուրումների դեմ, խոշորագույն հաղթանակների հասցրին մասսաների կոմունիստական դաստիարակության գործում։

Միլիոնավոր աշխատավորներ, տիրապետելով մարքսիզմ-լենինիզմի գաղափարներին, մեծագույն խանդավառությամբ մասնակցում են մեր երկրում կոմունիզմի կառուցման գործին։

Կոմունիստական շինարարության բնագավառում Սովետական Միության ձեռք բերած հաջողությունները ոգեշնչում են ամբողջ պրոգրեսիվ մարդկությանը, որը Սովետական Միու-



թյունը դիտում է իբրև աշխատավորների իղձերի իրականացման օրինակ։ Սովետական ժողովրդի այս հաջողությունները նրանք ընկալում են իբրև անգնահատելի մի ավանդ ամբողջ աշխարհում խաղաղության համար մղվող պայքարի գործում։

Սովետական կառավարությունն իր Ստալինյան արտաքին քաղաքականության մեջ հենվում է ամբողջ սովետական ժողովրդի կողմից ցույց տրվող ընդհանուր աջակցության վրա, միջազգային կյանքի բոլոր հարցերում հաստատակամությամբ ու հետևողականորեն իրագործում է ժողովուրդների միջև խաղաղության քաղաքականություն, ուրիշ ժողովուրդների սուվերեն իրավունքների պաշտպանության քաղաքականություն, ուրիշ երկրների անկախությունը իմպերիալիզմի կողմից ստրկացվելու սպառնալիքից պաշտպանելու քաղաքականություն։

Սովետական կառավարության լենինյան-ստալինյան խաղաղ քաղաքականությունն ապահովեց ժողովրդական դեմոկրատիայի երկրների քաղաքական ամրապնդումն ու տնտեսա-

կան զարգացումը, երկրներ, որոնք հաջողությամբ դնում են սոցիալիզմի կառուցման հիմքը, օգտվելով Սովետական Միության մեջ սոցիալիզմի կառուցման օրինակից և վայելելով սովետական ժողովրդի անշահախնդիր օգնությունը։

Եթե Սովետական Միությունում և ժողովրդական դեմոկրատիայի երկրներում տեղի է ունենում ժողովրդական տնտեսության վերելք ու հետագա զարգացում և մշտապես բարելավվում է աշխատավոր բնակչության նյութական բարեկեցությունը, ապա կապիտալիզմի երկրներում մենք տեսնում ենք հակառակ պրոցես— տնտեսական ճգնաժամի ուժեղացում և խորացում, արտադրության մակարդակի անկում, գործազրկության աճում, մասսայական սպառման ապրանքների գների սիստեմատիկ բարձրացում, դրամի, այդ թվում և դոլարի գնողունակության անկում և աշխատավոր բնակչության լայն մասսաների աղքատացում, որոնք ստեղծում են նրանց գոյության համար անտանելի պայմաններ։



Նույնիսկ Ամերիկայի Միացյալ Նահանգներում, որոնք իրենցից կախման մեջ գտնվող երկրների բացահայտ կողոպտման քաղաքականություն են վարում, որպեսզի իրենց փրկեն կապիտալիստական սիստեմին հատուկ ճգնաժամից, տեղի է ունենում նույնպիսի տնտեսական անկում, արտադրությունը խիստ կերպով կրճատվում է արդյունաբերության այն ճյուղերում, որոնք քաղաքացիական բնակչությանն են սպասարկում։

Ամերիկայի Միացյալ Նահանգների արդյունաբերության մի քանի ճյուղերում գոյություն ունեցող համեմատաբար բարձր մակարդակը բացատրվում է ռազմանյութերի ուժեղ արտադրությամբ։

Արդյունաբերության այդպիսի միակողմանի զարգացումը առաջին հատկանիշն է այն տնտեսական ճգնաժամի, որի մեջ ավելի ու ավելի է խրըվում Ամերիկայի Միացյալ Նահանգների էկոնոմիկան։

Ամերիկյան էկոնոմիկայի անկումն է ցույց տալիս 1952 թվականի առաջին կիսամյակում ամերիկյան էկոնո-

միկայի վիճակի մասին կառավարության կողմից Կոնգրեսին ներկայացված նույնիսկ պաշտոնական հաշվետվությունը, որի մեջ արձանագրվում է, որ լայն սպառման ապրանքների արտադրությունը 1952 թվականի առաջին կիսամյակում շատ ավելի ցածր է եղել, քան 1951 թվականի նույն ժամանակաշրջանում։ Գործազուրկների և կիսագործազուրկների թիվը 13 միլիոն մարդուց ավելի է։ Ապրանքների գները սիստեմատիկաբար բարձրանում են, իսկ դոլարի գնողունակությունը շարունակում է նվազել։

Այսպիսի պայմաններում անասելի չափերով աճում են կապիտալիստական մագնատների շահույթները և խիստ կերպով ընկնում է աշխատավոր բնակչության կենսամակարդակը։

Մի քանի տարի առաջ Ամերիկայի Միացյալ Նահանգների ղեկավար շրջանները հրապուրվում էին այն հույսով, թե սպառազինությունների մրցավազքը իրենց էկոնոմիկան կփրկի հասունացող ճգնաժամից. սակայն այդ հույսերը չարդարացան։ Արդյունաբերության փոխադրումը պատե-



րազմական ժամանակվա ռելսերի վրա, ավելի ու ավելի է քայքայում կապիտալիստական երկրների, այդ թվում և Ամերիկայի Միացյալ Նահանգների էկոնոմիկան։

Այսպիսով, Ամերիկայի Միացյալ Նահանգներին չօգնեցին ո՛չ «Մարշալի պլանը», ո՛չ Տրումենի դոկտրինան արդյունաբերական տեսակետից չզարգացած երկրներին այսպես կոչված՝ օգնություն ցույց տալու մասին, ո՛չ էլ մյուս կողոպտչական միջոցառումները, որոնց նպատակն էր Ամերիկայից կախման մեջ գտնվող մյուս երկրների էկոնոմիկայի կողոպտումը Ամերիկայի Միացյալ Նահանգները տնտեսական ճգնաժամի խորացումից փրկելու համար։

Վերջին ժամանակներս Ամերիկայի Միացյալ Նահանգների իմպերիալիստական շրջանները կանգնել են նոր պատերազմի նախապատրաստությունն արագացնելու ուղու վրա, հույս ունենալով դրա մեջ գտնել կապիտալիստական սիստեմի փրկությունը։

Այդ նպատակով Ամերիկայի Միացյալ Նահանգները ռազմական բազա-

ներ են ստեղծում Ամերիկայից հեռու գտնվող շրջաններում, ստեղծում են «ատլանտյան», «խաղաղօվկիանոսյան», «միջինարևելյան» և այլ ագրեսիվ բլոկներ։

Ամերիկայի Միացյալ Նահանգների այս քաղաքականության կապակցությամբ հետաքրքիր կլինի աչքի անցկացնել Մերձավոր Արևելքի այն երկրների դրությունը, որոնք գտնվում են մեզնից ոչ հեռու, Սովետական Միության հարավային սահմանի մոտ։

Այդ երկրներում ամերիկա-անգլիական իմպերիալիզմը դաժանորեն շահագործում և բացեիբաց կողոպտում է ազգային հարստությունը, այդ երկրների բնակչությանը հասցնելով աղքատության և սովի։

Աշխարհագրական տեսակետից այդ բոլոր երկրները գտնվում են այնպիսի գոտում, որը բացառիկ կերպով բարենպաստ է մերձարևադարձային ապրանքային տնտեսություն վարելու համար, որից ստացվող եկամուտները կարող էին ապահովել բնակչության



բավականաչափ բարձր կենսամակարդակ։

Մերձավոր Արևելքի երկրներն ունեն ընդերքի հսկայական հարստություններ, նրանք ունեն նավթ, քրոմի հանքաքար և այլ գունավոր մետաղներ, որոնց մշակումն ու զարգացումը կկարողանար լավ հիմք հանդիսանալ այդ երկրների արդյունաբերական զարգացման համար։

Սակայն, չնայած այսպիսի հնարավորություններին, այդ երկրները աղետալի դրության մեջ են գտնվում շնորհիվ կառավարող ռեակցիոն շրջանների դավաճանական քաղաքականության, որոնք ամեն կերպ օգնում են ամերիկա-անգլիական իմպերիալիզմին՝ այդ երկրների ազգային հարըստությունները փաստորեն զավթելու գործում։

Թյուրքիան գյուղատնտեսական երկիր է։ Գյուղատնտեսությունից ստացվող եկամուտները երկու և կես անգամ գերազանցում են արդյունաբերությունից ստացվող եկամուտներին։

Անգլիայի և Ամերիկայի իմպերիալիստական քաղաքականության հետե-

վանքով Թյուրքիայի գյուղատնտեսությունը միակողմանի զարգացում է ստացել։

Անցյալում մեծ քանակությամբ պարենային հացահատիկ արտադրող և հացով իրեն լիովին ապահովող այդ երկիրը վերջին տարիներս հարկադրված եղավ կրճատել հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունը, որպեսզի ընդարձակեր միակ էքսպորտային կուլտուրայի՝ ծխախոտի ցանքատարածությունները։ Այդ բանի հետևանքով Թյուրքիայում ներկայումս չի բավականացնում սեփական հացը, բնակչությունը պարենամթերքի խիստ կարիք է զգում և կառավարությունը հարկադրված է վալյուտայով հաց գնել արտասահմանում։ Վերջին տարիներս Թյուրքիայի կառավարությունը ներմուծել է հարյուր հազարավոր տոննա պարենային հացահատիկ։

Սովը դառնում է թյուրք ժողովրդի մշտական ուղեկիցը։ Մամուլի հաղորդագրությամբ, միայն 1950 թվականին երկրի 22 վիլայեթներում թագավորել է սովը։



Թյուրքիայի գյուղատնտեսության մեջ տարեցտարի ընդարձակվում էր ծխախոտի ցանքատարածությունը, որից տարեկան ստացվում էր 95—97 հազար տոննա ծխախոտ։ Վերջին տարիների ընթացքում, Ամերիկայի Միացյալ Նահանգների քաղաքականության շնորհիվ, խիստ կերպով կրճատվեց թյուրքական ծխախոտի արտահանությունը դեպի արտաքին շուկաներ։

Ամերիկյան ծխախոտը թյուրքական ծխախոտին դուրս է մղում Արևմտյան Եվրոպայի շուկաներից, որի հետևանքով Թյուրքիայում կուտակվել են ծխախոտի մեծ պաշարներ, որոնք վաճառահանման շուկա չեն գտնում։ Այդ դրությունը իր հերթին ուժեղ հարված է հասցնում գյուղատնտեսության վիճակին, որը տարեցտարի հետադիմում է։ Այս կապակցությամբ էլ չափազանց ցածր է գյուղատնտեսության տեխնիկական հագեցվածությունը։ Բավական է միայն ասել, որ յուրաքանչյուր 150 գյուղացիական տնտեսություններից միայն մեկ տնտեսություն ունի երկաթե գութան և 1.666

տնտեսությունից միայն մեկն ունի կալսիչ մեքենա։

Գյուղատնտեսական տարածության մոտավորապես 77 տոկոսը գտնվում է կալվածատերերի ու կուլակների ձեռքում և միայն 23 տոկոսն է, որ անմիջականորեն օգտագործվում է երեք միլիոն գյուղացիական տնտեսությունների կողմից։

Նույնպիսի տխուր պատկեր է տիրում նաև Թյուրքիայի արդյունաբերության մեջ։

Հայտնի է, որ Թյուրքիան այնպիսի մի երկիր է, որը լիովին կախման մեջ է գտնվում իմպերիալիստական երկրներից՝ Անգլիայից և Ամերիկայից, որոնք նրան հնարավորություն չեն տալիս զարգանալու ինդուստրիալ տեսակետից։ Այս պատճառով էլ Թյուրքիայում գոյություն ունի միայն թեթև արդյունաբերություն՝ տեքստիլ, կոշկեղենի, կաշվեղենի, ապակու և այլն։

Ամերիկյան մրցակցության ճնշման տակ և այն բանի հետևանքով, որ Թյուրքիա են ներմուծվում ամերիկյան ապրանքներ, խիստ կրճատվում է մասսայական սպառման ապրանքների



արտադրությունը, որի հետևանքով փակվում են երկրում եղած ձեռնարկությունները։

Արդյունաբերության միայն մեկ ճյուղ՝ քրոմի և երկաթի հանքաքարի հանույթն է, որ վերջին տարիների ընթացքում զարգանում է, այն էլ այդ հանքաքարը տեղում չի վերամշակվում, այլ ամերիկացիների կողմից ամբողջապես արտահանվում է իբրև ստրատեգիական հումք։

Լեռնահանքային արդյունաբերության ձեռնարկությունները գտնվում են ամերիկացիների ձեռքում, և այդ ձեռնարկություններից ստացվող շահույթները ամբողջապես մնում են ամերիկյան մոնոպոլիաներին ու չեն արտացոլվում Թյուրքիայի ազգային եկամտի մեջ։

Գյուղատնտեսության դեգրադացիան, թեթև արդյունաբերության ձեռնարկությունների կրճատումը բնակչության մեջ առաջ են բերել մեծ չափերի հասնող գործազրկություն։ 1950 թվականին գործազուրկների թիվը հասավ երկու միլիոն մարդու։ Աշխատավորների դրությունն էլ ավելի

է վատթարանում ուժից վեր հարկերի պատճառով, որոնք վերջին տարիների ընթացքում աճել են 8 անգամ։ Ապրանքների գները տարեցտարի բարձրանում են։ Թյուրքական լիրան արժեքազրկվում է։ Գործազուրկների և աղքատների շարքերն են ներհոսում միլիոնավոր հողազուրկ գյուղացիներ ու բատրակներ, որոնք ամեն տարի դաշտային աշխատանքներից հետո թողնում են գյուղը և երբեմն ամբողջ գյուղերով գնում են քաղաքները, հույս ունենալով այնտեղ գտնել որևէ աշխատանք՝ գոյության միջոց։

Թյուրքիայում յուրաքանչյուր տարի միջին հաշվով մեռնում է նորածինների մոտ 60 տոկոսը, միայն թոքախտից ամեն տարի մեռնում են տասնյակ հազարավոր մարդիկ։

Այսպես է ներկայումս թյուրք ժողովրդի դրությունը Ամերիկայի Միացյալ Նահանգների հրեշավոր իմպերիալիստական քաղաքականության, Թյուրքիայի կառավարող շրջանների ծախվածության և հակաժողովրդական քաղաքականության հետևանքով։

Դրությունն ավելի լավ չէ Ամերի-



կայի Միացյալ Նահանգներից կախման մեջ գտնվող նաև մեկ ուրիշ երկրում՝ Իրանում։

Իրանը նույնպես գյուղատնտեսական երկիր է, որտեղ բնակչության 80 տոկոսից ավելին գոյության միջոցներ ստանում է գյուղատնտեսությունից։

Իրանի տիրապետության տակ է գտնվում Հարավային Ադրբեջանը, որը բացառիկ պայմաններ ունի հացահատիկային տնտեսություն վարելու համար։ Իվ իսկապես, որոշ ժամանակ սրանից առաջ Իրանը ոչ միայն իրեն ապահովում էր սեփական հացով, այլ որոշ ավելցուկներ նույնիսկ արտահանում էր։

Իմպերիալիստների տիրապետությունը, գյուղատնտեսության միակողմանի զարգացումը և էքսպորտային կուլտուրաների՝ բրնձի ու բամբակի ցանքատարածությունների ընդարձակումը հասցրին այն բանին, որ Իրանը վերջին տարիներս հարյուր հազարավոր տոննաներով հացահատիկ է ներմուծում արտասահմանից։

Հողերի գիշատիչ շահագործումը,

կալվածատերերի ու օտարերկրացիների կամայականությունը հասցրին գյուղատնտեսական կուլտուրաների արտադրության անկման, որի կապակցությամբ կրճատվում է հացահատիկի համախառն արտադրությունը։

Կրճատվում է նաև խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը։ Միայն 1951 թվականի ընթացքում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը կրճատվել է՝ երկու և կես միլիոն գլխից իջնելով 2 միլիոն 100 հազար գլխի։ Ոչխարների գլխաքանակը 13 միլիոն 200 հազար գլխից կրճատվել է՝ իջնելով մինչև 11 միլիոն գլխի։

Հայտնի է, որ Իրանը արդյունաբերական տեսակետից թույլ զարգացած երկիր է։ Գոյություն ունեցող ձեռնարկությունների մեծամասնությունում աշխատում են 5-ից մինչև 100 բանվոր և այդ ձեռնարկություններն արտադրում են հիմնականում լայն սպառման ապրանքներ։

Իրանում ամերիկացիների տերուտնօրինության և երկրում ամերիկյան ապրանքների ներմուծումն ուժեղանալու հետևանքով այդ ձեռնարկու-



թյունները չեն դիմանում մրցակցությանը և փակվում են կամ թե վերածվում վնասաբեր ձեռնարկությունների։

Ամերիկացիների կողմից ներմուծվող ապրանքների գները վերջին ժամանակաշրջանում բարձրանում են, և առաջին անհրաժեշտության ապրանքները անմատչելի են դառնում աշխատավորական լայն մասսաների համար։

Կենսագնի ինդեքսը 1951 թվականին, նախապատերազմյան ժամանակվա համեմատությամբ, աճեց ութ և կես անգամ։

Հայտնի է, որ Իրանն ունի նավթային մեծ հարստություններ, բայց ազգային հարստության այդ խոշորագույն աղբյուրը մինչև վերջին ժամանակներս գտնվում էր անգլիական մոնոպոլիստների ձեռքում։ Անգլո-իրանական նավթային ընկերությունն իր գոյության ամբողջ ժամանակաշրջանում Իրանից արտահանել է ավելի քան 300 միլիոն տոննա նավթ, դրա վաճառքից ստանալով մոտ 5 միլիարդ դոլար եկամուտ։ Այդ գումարից Իրանին հքրև

մաքս և հարկեր բաժին է հասնել միայն մեկ քսանչորսերորդ մասը։

Ամերիկա-անգլիական իմպերիալիստների տերուտնօրինությունն Իրանում չափազանց բացասաբար է անդրադառնում նաև երկրի ֆինանսների վրա։ Իրանի բյուջեն, ինչպես և Թյուրքիայի բյուջեն, վերջին տարիների ընթացքում դեֆիցիտային են 1950 թվականին եկամուտները ծածկում էին Իրանի բյուջեի միայն 50 տոկոսը։ Իրանում նույնպես աճում է ինֆլյացիան։ Աճել են աշխատավորների վրա դրվող հարկերը։ Հսկայական միջոցներ են ծախսվում ամերիկյան մասնագետների ու խորհրդականների պահպանման վրա։ 1950 թվականին Իրանն ամերիկացիների վրա ծախսել էր ավելի քան երեք և կես միլիոն դոլար։ Ամերիկայի Միացյալ Նահանգներից այսպես կոչված «օգնության» կարգով ստանալով միայն կես միլիոն դոլար։

Այդպիսին է ամերիկա-անգլիական իմպերիալիզմի կողմից իրանական ժողովրդի անզուսպ շահագործման և կողոպտման քաղաքականությունը։

Մի քանի խոսք հարկ կլինի ասել



նաև Եգիպտոսի մասին, որտեղ անգլո-ամերիկյան իմպերիալիզմի դաժան քաղաքականությունը գյուղացիների լայն խավերին հասցրել է աղետալի դրության։

Սկզբում անգլիացիները, իսկ վերջին ժամանակներս նաև ամերիկացիները Եգիպտոսում գյուղատնտեսության զարգացումը ուղղում էին միայն դեպի բամբակի պլանտացիաների ընդարձակումը, ի հաշիվ պարենային կուլտուրաների ցանքատարածությունների կրճատման, երկրի տնտեսությունը վերածելով իրենց բամբակյա գործվածքների արդյունաբերության համար հումքային կցորդի։

Հողի գիշատիչ շահագործումը և հողագործության չափից դուրս ցածր տեխնիկան գյուղատնտեսության գլխավոր ճյուղը՝ բամբակագործությունը հասցրին դեգրադացիայի։ Այդ բանի բնորոշ ցուցանիշն է հանդիսանում բամբակի բերքատվությունը։ Անցյալ դարի 90-ական թվականներին Եգիպտոսը յուրաքանչյուր հեկտարից ստանում էր 6,3 ցենտներ բերք, 1940 թվականին ստացավ 5,7 ցենտներ,

իսկ 1951 թվականին արդեն յուրաքանչյուր հեկտարից 4,4 ցենտներ։

Ամերիկացիների քաղաքականությունը Եգիպտոսում հասցրեց այնպիսի դրության, որ միակ էքսպորտային կուլտուրան՝ բամբակը վաճառահանման շուկա չի գտնում, ստեղծվում են մեծ կուտակումներ և այդ բանից օգտվելով՝ անգլո-ամերիկացիները բամբակը ձեռք են բերում աննշան գնով։

Եգիպտոսն այժմ հարկադրված է մեծ քանակությամբ հացահատիկ ներմուծել դրսից։ Միայն 1951 թվականին ներմուծվել է ավելի քան մեկ միլիոն տոննա հացահատիկ։

Եգիպտոսի արդյունաբերությունը նույնպես ենթարկված է օտարերկրյա կապիտալի շահերին, որի հետևանքով երկրում կրճատվում է արդյունաբերական արտադրանքը։ 1948 թվականին բրդյա թելի արտադրությունը նվազեց՝ 4.600 տոննայից իջնելով մինչև 2.400 տոննայի, իսկ 1950 թվականին թելի արտադրությունը կրճատվեց համարյա երկու անգամ։ Շաքարի արտադրությունը



222 հազար տոննայից կրճատվեց մինչև 174 հազար տոննայի։

Եգիպտոսի բյուջեն նույնպես տառապում է խրոնիկական դեֆիցիտով։ Մեծ չափերի է հասել ինֆլյացիան։ Նախապատերազմյան տարվա համեմատությամբ լայն սպառման ապրանքների գներն աճել են 3—4 անգամ, իսկ բնակարանային վարձը՝ 4—5 անգամ։

Եգիպտական մամուլի տվյալներով, եգիպտական բանվորի աշխատավարձի միջին մակարդակը 1950 թվականին կազմում էր ամսական 2,25 եգիպտական ֆունտ, որը բավականացնում էր նրա ընտանիքը միայն եգիպտացորենի հացով կերակրելու համար։

Եգիպտոսի քաղաքներում բանվորները, ի վիճակի չլինելով բնակարանի վարձ վճարել ամբողջ օրվա համար, սենյակը վարձում են ցերեկվա ընթացքում կամ մեկ գիշերով քնելու համար։

Աղքատիկ գոյություն են քարշ տալիս եգիպտական ֆելլահները, որոնք

ապրում են խղճուկ հյուղակներում, կիսամերկ ու կիսաքաղց վիճակում։

Է՛լ ավելի վատ է վիճակը Մերձավոր Արևելքի մյուս երկրներում՝ Սիրիայում, Իրաքում և արաբական այլ երկրներում, որտեղ տերատնօրինություն են անում ամերիկա-անգլիական իմպերիալիստները։ Աշխատավորների գոյության նյութական պայմանները այս երկրներում նույնիսկ ավելի վատ են, քան Թյուրքիայում և Իրանում։

Մերձավոր Արևելքի երկրներում աշխատավորների լայն մասսաների այսպիսի աղետալի դրությունը նրանով է բացատրվում, որ անգլո-ամերիկյան մոնոպոլիաներն այդ երկրներում ներդրված կապիտալից ստանում են շատ ավելի բարձր շահույթներ, քան այն կապիտալներից, որոնք ներդրված են ուրիշ երկրներում։

Եթե շահույթի միջին նորման Արևմտյան Եվրոպայի երկրներում կազմում է 14,5 տոկոս, Լատինական Ամերիկայի երկրներում՝ 17,4 տոկոս, մյուս գաղութներում՝ 20 տոկոս, ապա Մերձավոր Արևելքի երկրներում



շահույթի միջին նորման կազմում է 31,3 տոկոս։

Մերձավոր Արևելքի երկրների բընակչության այսպիսի դաժան շահագործմանն աշխատավոր մասսաները պատասխանում են ատելությամբ դեպի ամերիկա-անգլիական իմպերիալիզմը, չեն գայթակղվում ամերիկացիների հրապուրանքով և չեն ուզում մասնակցել ամերիկա-անգլիական ագրեսիվ զինված ուժերի այսպես կոչված «միջին-արևելյան հրամանատարության» կամ, ինչպես դրան վերջին ժամանակներս անվանում են՝ «միջին-արևելյան պաշտպանողական կազմակերպության» ստեղծմանը։

Ամերիկայի ու Անգլիայի իմպերիալիստների և իրենց կառավարող շըրջանների նկատմամբ ժողովուրդների ատելության մասին է վկայում վերջին ժամանակվա մի փաստ, երբ թյուրքական կառավարությունը կրեական ժողովրդի դահիճ Ռիջուեյին պրովոկացիոն նպատակով հրավիրեց այցելելու Թյուրքիայի այն շրջանները, որոնք սահմանակից են Սովետական Միությանը։ Այն ուղու վրա, որով

պետք է անցներ Ռիջուեյն իր շքախմբով, ճանապարհները փակվել էին, իսկ այդ ուղու երկարությամբ գտնվող գյուղերի բնակչությունը քշվել էր երկրի խորքը, քանի որ և՛ Թյուրքիայի կառավարությունը, և՛ Ռիջուեյն ինքը արտակարգ երկյուղ էին կրում թյուրք բնակչությունից։

Այս փաստը վկայում է Թյուրքիայի աշխատավորների մեջ հակաիմպերիալիստական ուժեղ տրամադրությունների մասին և անգլո-ամերիկյան իմպերիալիստների, վերջիններիս ագրեսիվ քաղաքականության ու հենց Թյուրքիայի կառավարող շրջանների նկատմամբ նրանց ատելության մասին։

Մերձավոր Արևելքի երկրների կառավարողներից միայն թյուրքական կառավարողներն են, որ դեպի Սովետական Միությունը իրենց ատելությամբ կուրացած, ամերիկա-անգլիական ագրեսիվ բլոկին ծնկաչոք խնդրում էին Թյուրքիային ընդունել իմպերիալիստական պետությունների ագրեսիվ բլոկի մեջ։ Իսկ Մերձավոր Արևելքի մնացած երկրների կառա-



վարությունները, բնակչության լայն մասսաների հակաամերիկյան ու հակաանգլիական տրամադրությունների ազդեցության տակ, վախենալով նրանց բացահայտ զայրույթն ու դիմադրությունը առաջացնելուց, տատանվում են և ագրեսիվ բլոկի մեջ մտնելու համաձայնություն չեն տալիս։

Մերձավոր Արևելքի երկրների աշխատավոր մասսաների այդ հակաիմպերիալիստական տրամադրությունները գիտենալով, Ամերիկան և Անգլիան իրենց նպատակին հասնելու համար կանգ չեն առնում ամենահրեշավոր մեթոդների գործադրման առաջ, կազմակերպում են դավադրություններ, պետական հեղաշրջումներ, իրենց քաղաքականության իրականացմանն ընդդիմադրող պրեմյեր-մինիստրների, թագավորների ու պետական այլ գործիչների սպանություններ և արտաքսումներ։

Տեռորը, կաշառումը, դավադրությունները և նույնիսկ յոթ ամսական երեխային թագավոր հռչակելը չեն կարող կանգնեցնել Մերձավոր

Սրևելքի երկրների աշխատավոր մասսաների հարաճուն ազատագրական շարժումը՝ իմպերիալիստական լծից ազատագրվելու և իրենց երկրների ազատ, խաղաղ զարգացման համար։

Այս ամենից պարզ է դառնում, որ կապիտալիզմի երկրներում, այդ թվում և Ամերիկայի Միացյալ Նահանգներում, խորանում է տնտեսական ճգնաժամը, տեղի է ունենում աշխատավորների դաժան շահագործում՝ մոնոպոլիաների համար առավելագույն շահույթներ կորզելու նպատակով, որը հասցնում է աշխատավոր մասսաների գործազրկության, աղքատացման և սովի։ Սրվում են հակասությունները հենց իմպերիալիստական երկրների միջև և, առաջին հերթին, Ամերիկայի Միացյալ Նահանգների ու Անգլիայի միջև, ինչպես նաև իմպերիալիստական տերությունների ու նրանցից կախման մեջ գտնվող երկրների միջև։

Տնտեսական այսպիսի անկման և կապիտալիստական սիստեմի քայքայիչ ներգործության պայմաններում ա-



մերիկյան իմպերիալիստական ռեակցիոն շրջանները կանգնել են նոր զավթողական պատերազմի նախապատրաստությունն արագացնելու և Սովետական Միության ու խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի ամբողջ լագերի հետ հարաբերությունները սրելու ուղու վրա։

Իմպերիալիզմի լագերը իր երկրների ներսում ուժեղացնում է հետապնդումն ու տեռորը աշխատավոր մասսաների նկատմամբ, որոնք պայքարում են իրենց գոյության պայմանները բարելավելու համար, խաղաղության ու դեմոկրատիայի համար, սպառազինությունների մրցավազքի դեմ, պատերազմի հրձիգների դեմ։

Իմպերիալիստական լագերի երկրներում գոյություն ունեցող դրությանը հակառակ, Սովետական Միությունում և ժողովրդական դեմոկրատիայի երկրներում սրընթաց զարգանում են ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը, բարելավվում է բնակչության նյութական բարեկեցությունը և

բարձրանում է նրա կուլտուրական մակարդակը։

Սովետական Միության վիթխարի հաջողությունները և նրա խաղաղության քաղաքականությունը բարձրացնում են նրա միջազգային հեղինակությունը և աշխարհում իմպերիալիստական տերությունների ագրեսիվ քաղաքականության ընդդիմացող բոլոր պրոգրեսիվ ուժերին համախմբում են պայքարելու ընդդեմ նոր պատերազմի սանձազերծման, պայքարելու հանուն խաղաղության, իմպերիալիստական ճնշումից ազատագրվելու համար։

Սովետական Միության կողմից գլխավորվող խաղաղության և դեմոկրատիայի շարքերն ավելի ու ավելի է ուժեղանում։ Մեծ առաջնորդ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի այն կոչը, որ «խաղաղությունը կպահպանվի ու կամրապնդվի, եթե ժողովուրդները խաղաղության պահպանման գործը վերցնեն իրենց ձեռքը և դա պաշտպանեն մինչև վերջ», ավելի ու ավելի է տիրապետում ամբողջ աշխարհի աշխատավորների գիտակցությանը։



խաղաղության ուժերը, որպես անհաղթահարելի պատնեշ, կանգնած են Ամերիկայի Միացյալ Նահանգների ու Անգլիայի կողմից նոր զավթողական պատերազմ հրահրելու ճանապարհին, պայքարելով ամբողջ աշխարհում դեմոկրատիայի և սոցիալիզմի գաղափարների հաղթանակի համար։

## II

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԵՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆԿԱՏՄԱՄԲ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՂԵԿԱՎԱՐՄԱՆ ՎԻՃԱԿԸ

Վերելք և ծաղկում գոյություն ունի նաև Հայաստանում, որը մեծ Սովետական Միության բաղկացուցիչ մասն է հանդիսանում։

Թույլ տվեք անցնել ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի զարգացման վիճակի և պարտիական կազմակերպությունների գործունեության բնութագրմանը Հայաստանի Կոմունիստական (բոլ-

շևիկների) պարտիայի 15-րդ համագումարից հետո անցած ժամանակաշրջանում։

ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ

Իրագործելով կառավարության քաղաքականությունը արդյունաբերական նոր ձեռնարկությունների նպատակահարմար աշխարհագրական տեղադրման ասպարեզում, ելնելով դրանք հումքի աղբյուրներին մոտեցնելու սկզբունքից, հաշվետու ժամանակաշրջանում տեղի է ունեցել ռեսպուբլիկայի արդյունաբերության հետագա աճ՝ նոր ձեռնարկություններ շահագործման հանձնելու, գործող ձեռնարկություններն ընդարձակելու, արդյունաբերության ներսում եղած ռեզերվները երևան հանելու ու օգտագործելու հաշվին։

1951 թվականին համախառն արտադրանքի թողարկման պլանը ամբողջ արդյունաբերության կողմից կատարվեց 104,4 տոկոսով, որը 1950 թվականի համեմատությամբ կազմում է 120,5 տոկոս։



1952 թվականի պլանով նախատեսվում է արդյունաբերական արտադրանքի թողարկման հետագա աճ, որի ծավալը, 1951 թվականի պլանի փաստական կատարման համեմատությամբ, կկազմի 112,7 տոկոս։

Այս պլանի կատարումը հաջող է ընթանում։ Առաջին կիսամյակի պլանն արդյունաբերությունը կատարել է 100 տոկոսով։ Տարեկան պլանը կկատարվի ու կգերակատարվի։

Արդյունաբերության համախառն արտադրանքի ընդհանուր աճին և պետական պլաններն ամեն տարի կատարելուն զուգընթաց տեղի է ունեցել ձեռնարկությունների աշխատանքի որակական ցուցանիշների հետագա բարելավում։ Արտադրական պրոցեսների կատարելագործման, նոր տեխնոլոգիայի ու արտադրության նորարարների փորձի արմատավորման և բանվորների որակավորումը բարձրացնելու ուղղությամբ կատարվող սիստեմատիկ աշխատանքը 1951 թվականին հասցրին բանվորների աշխատանքի արտադրողականության աճ-

մանը 1950 թվականի համեմատությամբ 8 տոկոսով։

Որոշակի հաջողություններ են ձեռք բերված նաև արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու գործում։ Ռեսպուբլիկական և միութենական-ռեսպուբլիկական արդյունաբերության ձեռնարկություններում համեմատական ապրանքային արտադրանքի ինքնարժեքը 1951 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, իջել է 7,8 տոկոսով, իսկ 1952 թվականի 6 ամսում, 1951 թվականի համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, 10 տոկոսով։

Վերջին տարիների համար բնորոշ է ծանր արդյունաբերության ձեռնարկությունների կողմից արտադրանքի թողարկման ավելի մեծ աճը։

Եթե թեթև արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1951 թվականին ավելացել էր, 1950 թվականի համեմատությամբ, 18 տոկոսով, ապա ծանր արդյունաբերության արտադրանքի ծավալը այդ նույն ժամանակամիջոցում աճեց 25,1 տոկոսով։



1952 թվականի պլանում նախատեսված է թեթև արդյունաբերության արտադրանքի աճ 6,7 տոկոսով, իսկ ծանր արդյունաբերության գծով, 1951 թվականի համեմատությամբ, 34,2 տոկոսով։

Հետագա տարիներին ծանր արդյունաբերության արտադրանքի տեսակարար կշիռը արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ անշեղորեն կաճի։

Արդյունաբերության աճման կապակցությամբ ավելացել է արդյունաբերության մեջ զբաղված բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների և ծառայողների թիվը։

Արտադրական բանվորների քանակը 1951 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, աճել է 13,1 տոկոսով։

Հայաստանի հետագա արդյունաբերական զարգացման համար չափազանց կարևոր նշանակություն ունի օգտակար հանածոների արդյունաբերական պաշարների ուսումնասիրումն ու հայտնաբերումը։

Ի կատարումն Հայաստանի Կոմու-

նիստական պարտիայի 15-րդ համագումարի որոշման, երկրաբանական-հետախուզական աշխատանքները մեծ չափով ընդարձակվեցին և այդ աշխատանքների ծավալը 1951 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, աճեց 43,6 տոկոսով, իսկ 1952 թվականի պլանով նախատեսված է, 1951 թվականի համեմատությամբ, աճ ևս 56 տոկոսով։

Այդ աշխատանքների հետևանքով պղնձի հետախուզված արդյունաբերական պաշարները առ 1-ը սեպտեմբերի ընթացիկ տարվա, 1949 թվականի համեմատությամբ, ավելացել են երկու անգամ։

Հայտնաբերված են նաև այլ գունավոր մետաղների նոր հանքավայրեր և ներկայումս հաշվարկվում են արդյունաբերական պաշարները ու պայմաններ են նախապատրաստվում այդ հանքավայրերի շահագործման համար։

Վերջին ժամանակներս Հայկական գեոլոգիական վարչությունը հայտնաբերել է բարաղի հարուստ հանքավայրեր։ Միութենական կառավարու-



թյան որոշմամբ ներկայումս նախագծվում է կերակրի ու տեխնիկական աղի արդյունահանման ձեռնարկության շինարարությունը։

Գտնված են այրվող թերթաքարերի զգալի պաշարներ։ Բավականաչափ պաշարներ հայտնաբերվելու դեպքում կձեռնարկվի այդ հանքավայրի մշակումը։

Հետախուզական լայն աշխատանքներ են կատարվում ածխի հանքավայրերի հայտնաբերման ուղղությամբ։

Հայկական գեոլոգիական վարչությունը, իր աշխատանքում ունենալով որոշակի հաջողություններ, միաժամանակ մի շարք սխալներ է թույլ տալիս երկրաբանական-հետախուզական աշխատանքները կազմակերպելու ասպարեզում, եղած մեխանիզմները, միջոցներն ու կադրերը մանրատում է շատ օբեկտների միջև, որը ձգձգում է պաշարների ժամանակին հաշվարկումն ու առավել կարևոր հանքավայրերն արդյունաբերական յուրացման հանձնելը։

Հայկական գեոլոգիական վարչության ղեկավարները՝ ընկ. ընկ. Հա-

րությունյանը և Սարգսյանը անբավարար են կատարում Հայաստանի կոմպարտիայի 15-րդ համագումարի որոշումը հետախուզման նոր, ժամանակակից մեթոդների լայն կիրառման և աշխատատար պրոցեսների մեքենայացման ասպարեզում։

Անհրաժեշտ է երկրաբանական-հետախուզական աշխատանքները հետագայում կատարել ավելի նպատակասլաց ձևով, ուժեղացնել աշխատանքներն ամենից ավելի հեռանկարային հանքավայրերում և արագացնել դրանց շահագործման հանձնելը արդյունաբերական յուրացման համար։ Անհրաժեշտ է նաև տարբեր երկրաբանական կազմակերպությունների գծով կատարվող ամբողջ երկրաբանական հետախուզական աշխատանքը կատարել համաձայնեցված ձևով ու միասնական պլանով։

ՀԿ(բ)Պ 15-րդ համագումարը պարտիական կազմակերպությունների առաջ խնդիր դրեց բարելավել էներգետիկ սիստեմի աշխատանքը՝ գործող էլեկտրակայաններն անընդմեջ կերպով ու բարձր արտադրողականու-



թյամբ շահագործելու, կարճ ժամկետներում նոր էներգետիկ կարողություններ կառուցելու ու գործարկելու, ինչպես նաև ժողովրդական տնտեսության մեջ էլեկտրաէներգիայի ծախսումն ամեն կերպ տնտեսելու միջոցով։

Ռեսպուբլիկայի էներգետիկ սիստեմը 1951 թվականին էլեկտրաէներգիայի արտադրության պլանը կատարեց 103,2 տոկոսով, ըստ որում արտադրանքը 1950 թվականի համեմատությամբ աճեց 12,7 տոկոսով։ 1952 թվականի 6 ամսվա պլանը կատարված է 103,5 տոկոսով։

Գյումուշի հիդրոէլեկտրակայանը շահագործման հանձնելուց հետո ռեսպուբլիկայի էլեկտրական սիստեմի սահմանված կարողությունը կաճի 2,3 անգամ, զգալիորեն կբարելավվի Սևանի լճից բաց թողնվող ջրերի օգտագործման գործակիցը և կստեղծվի հզոր բազա ռեսպուբլիկայի արդյունաբերության հետագա զարգացման համար։

Գյումուշի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը պետք է ավարտվի

կառավարության կողմից սահմանված ժամկետում։

Գյումուշի հիդրոէլեկտրակայանի շինարարությունում ձեռք առնված միջոցների շնորհիվ բոլոր պայմանները ստեղծված են շինարարությունը ժամկետին ավարտելու համար՝ ստեղծված է կառուցողների ուժեղ կոլեկտիվ, շինարարությունը հագեցված է հայրենական բարձր արտադրողական նոր մեխանիզմներով, տրանսպորտային միջոցներով, սարքավորումով և այլն։

Սակայն Գյումուշի հիդրոէլեկտրակայանի շինարարությունում կան մի շարք էական թերություններ։ Եթե անցյալում լիմիտացնող տեղամաս էր համարվում թունելների շինարարությունը, ապա այժմ շինարարության մեջ ետ մնացող տեղամաս է բաց դերիվացիայի կառուցումը։ Այսպիսի դրություն ստեղծվեց աշխատանքները ոչ ճիշտ կազմակերպելու, այսինքն՝ բանվորական ուժն ու մեխանիզմները ոչ ճիշտ դասավորելու հետևանքով։

15-րդ համագումարի որոշմանը համապատասխան սկսվել է էլեկտրակայանների կառուցումը Ստալինի ան-



վան ջրանցքի վրա, Ոխչի գետի վրա՝ Ղափանի շրջանում և Այրումի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը։ Ավարտված է Արգնու հիդրոէլեկտրակայանի նախագծումը և մոտիկ ժամանակներս կսկսվի նրա շինարարությունը։

Հաշվետու ժամանակաշրջանում կառուցվել և շահագործման են հանձնվել նաև մի շարք գյուղական էլեկտրակայաններ՝ Հոկտեմբերյանի, Արտաշատի հիդրոէլեկտրակայանները, Ոսկեպարի հիդրոէլեկտրակայանը՝ Նոյեմբերյանի շրջանում և այլն։

Այս բանի, ինչպես նաև մյուս գյուղական էլեկտրակայանների աշխատանքը բարելավելու հետևանքով զգալիորեն ավելացել է էլեկտրաէներգիայի արտադրությունը գյուղական էլեկտրակայանների կողմից և բարելավվել է էլեկտրաէներգիայի մատակարարումը գյուղատնտեսությանը։

1951 թվականին գյուղական էլեկտրակայանները էլեկտրաէներգիա արտադրել են 58 տոկոսով ավելի, քան 1950 թվականին, իսկ ընթացիկ տարվա վեց ամսում 118.8 տոկոսով ավե-

լի՝ անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ։

Այս գործում անհետաձգելի խնդիր է հանդիսանում շահագործման հանձնըված էլեկտրակայաններում եղած շինարարական թերությունների արագ լիկվիդացումը և նրանց շահագործման հետագա բարելավումը։ Ինչպես երևում է վերը ասվածից, իրականացվում է ռեսպուբլիկայի էներգետիկ բազայի ընդարձակման մեծ ծրագիր։ Չնայած այդ բանին, էլեկտրաէներգիայի ծախսման առավելագույն խնայողությունը ռեսպուբլիկայի տնտեսական ու պարտիական կազմակերպությունների հիմնական խնդիրներից մեկն է հանդիսանում։

Ինչպես երևում է Հայաստանի ամբողջ արդյունաբերության աշխատանքի անալիզից, համախառն արտադրանքի թողարկման պլանը կատարվում և գերակատարվում է։ Կատարվում են նաև ձեռնարկությունների աշխատանքի հիմնական որակական ցուցանիշների գծով տրված առաջադրանքները։

Սակայն կան ետ մնացող տեղամա-



սեր և ռեսպուբլիկայի արդյունաբերության ու տրանսպորտի մի ամբողջ շարք ձեռնարկություններ, որոնք անբավարար են աշխատում և չեն կատարում արտադրական պլանները։

Մեքենաշինության ձեռնարկություններից պլանները չեն կատարում.

Երևանի էլեկտրատեխնիկական գործարանը (դիրեկտոր՝ ընկ. Խուբլարյան, պարտբյուրոյի քարտուղար՝ ընկ. Բալաչյան), որը ընթացիկ տարվա 6 ամսվա պլանը կատարել է 97,6 տոկոսով.

Երևանի էլեկտրանորոգման գործարանը (դերեկտոր՝ ընկ. Կիրակոսյան, պարտբյուրոյի քարտուղար՝ ընկ. Չըփլախյան), որը 1951 թվականի պլանը կատարել է 95,4 տոկոսով և ընթացիկ տարվա առաջին կիսամյակի պլանը՝ 94,9 տոկոսով.

Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանը (դիրեկտոր՝ ընկ. Վիրաբյան, պարտբյուրոյի քարտուղար՝ ընկ. Կարապետյան), որը 1951 թվականի պլանը կատարել է 94,7 տոկոսով և ընթացիկ տարվա 6 ամսվա պլանը՝ 97,5 տոկոսով.

Ժամացույցի գործարանը (դիրեկտոր՝ ընկ. Հարությունյան, պարտբյուրոյի քարտուղար՝ ընկ. Պետրոսյան), որը 1951 թվականի պլանը կատարել է 92,2 տոկոսով և ընթացիկ տարվա առաջին կիսամյակի պլանը՝ 92,6 տոկոսով։

Շինանյութերի Արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններից պլանների կատարման գործում ետ են մնում.

Արթիկ-տուֆը, որն ընթացիկ տարվա առաջին կիսամյակի պլանը կատարել է 76,2 տոկոսով։

Անի-պեմզան, որը 1952 թվականի առաջին կիսամյակի պլանը կատարել է 88,8 տոկոսով։

Երևանի աղյուս-կղմինդրի գործարանը, որը 1951 թվականի պլանը կատարել է 54,8 տոկոսով և 1952 թվականի առաջին կիսամյակի պլանը՝ 46,4 տոկոսով։

Կիրովականի աղյուս-կղմինդրի գործարանը, որը 1951 թվականի պլանը կատարել է 56,9 տոկոսով։

Պլանը չեն կատարում նաև մի շարք այլ ձեռնարկություններ։



Ամբողջ մինիստրության գծով 1951 թվականի պլանը կատարվել է 94,3 տոկոսով, ընթացիկ տարվա 7 ամսվա պլանը՝ 85,2 տոկոսով։ Ընթացիկ տարում երկրին պակաս է տրվել 84 հազար խորանարդ մետր տուֆ, մեկ միլիոն 800 հազար կղմինդր, 83 հազար խորանարդ մետր պեմզա և 1.200 տոննա կիր։

Որո՞նք են այս ձեռնարկությունների ետ մնալու պատճառները։

Հիշյալ մեքենաշինական գործարանների կողմից արտադրական պլանների թերակատարման պատճառները որոշելու համար բավական է աչքի անցկացնել արտադրության վիճակը Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում։

Այս գործարանի ձուլման ցեխը սիստեմատիկաբար տալիս է վատորակ ձուլվածք և խոտան այն բանի հետևանքով, որ այստեղ խախտվում է ձուլման տեխնոլոգիան։ Գործարանի դիրեկցիան և տեխնիկական ղեկավարությունը թերագնահատում են հարահոս մեթոդի նշանակությունը դետալների պատրաստման պրոցեսում,

հաճախ խզումներ են ստեղծում առանձին դետալների թողարկման գործում, կազմալուծելով հաստոցների հավաքման հետագա աշխատանքը։ Այս պատճառով էլ գործարանը չի կարողանում համաչափ գրաֆիկով արտադրանք տալ։

Դիրեկցիան չի կարգավորել արտադրությունը ժամանակին ապահովելու և ցեխերին գործիքներ մատակարարելու աշխատանքը։ Ինչպես երևում է վերը ասվածից, Ձերժինսկու անվան գործարանի կողմից պլանների թերակատարման պատճառը գործարանի ղեկավարության և մասնավորապես նրա տեխնիկական անձնակազմի (գլխավոր ինժեներ՝ ընկ. Շատվորյան) վատ աշխատանքն է։

Մյուս մեքենաշինական գործարանների կողմից նույնպես պլանների կատարման գործում ետ մնալու համար որևէ օբեկտիվ պատճառ գոյություն չունի։ Հիմնական պատճառն այն է, որ ետ մնացող այդ ձեռնարկությունների ղեկավարները վատ են կազմակերպում արտադրական պրոցեսը, չեն աշխատում տեխնոլոգիան կատարե-



լագործելու և արտադրության տեխնիկական կուլտուրան բարձրացնելու համար, չեն կարողանում հասնել ձեռնարկության ռիթմիկ աշխատանքին և արտադրանքի թողարկմանն ըստ գրաֆիկի։

Շինանյութերի արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում պլանների թերակատարման պատճառը ձեռնարկությունների ոչ օպերատիվ ղեկավարումն է հենց մինիստրության կողմից։

Նախկին մինիստր ընկ. Լ. Միքայելյանը, չնայած այն մեծ օգնությանը, որ կառավարությունը նրան ցույց էր տալիս մեխանիզմներով և սարքավորումով, վատ էր կազմակերպում աշխատանքների մեքենայացումը, ժամանակին որակյալ կադրեր չէր պատրաստում մեխանիզմներն օգտագործելու համար, չէր կատարում պարտիայի դիրեկտիվները իր ձեռնարկությունների բանվորների բնակարանային-կենցաղային պայմանները բարելավելու վերաբերյալ, որի հետևանքով ստեղծվում էր բանվորական ուժի մեծ հոսունություն, նա չէր կարո-

ղանում հաղթահարել ձեռնարկությունների աշխատանքում եղած սեզոնայնությունը։

ՀԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը հարկադրված եղան ընկ. Լ. Միքայելյանին ազատել մինիստրի պոստից, իջեցնել նրա պաշտոնը և միջոցներ ձեռք առնել մինիստրության ու շինանյութերի ձեռնարկությունների ղեկավարությունն ամրացնելու ուղղությամբ։

Մինիստրության նոր ղեկավարության առջև խնդիր է դրված՝ ամենակարճ ժամանակամիջոցում վերացնել ձեռնարկություններում եղած թերությունները և, հաշվի առնելով շինանյութերի աճած պահանջը, միջոցառումներ մշակել շինանյութերի արտադրությունն ավելացնելու ուղղությամբ, այն հաշվով, որ մինչև 1955 թվականը շինանյութերի արտադրությունն ավելացվի երկու և ավելի անգամ։

Առաջադրված խնդիրը միանգամայն ռեալ է և պետք է գտնվի ռեսպուբլիկայի պարտիական ու սովե-



տական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։

Արտադրական պլանները թերակատարվում են նաև Թեթև արդյունաբերության մի շարք ձեռնարկություններում։

Սննդի արդյունաբերության մինիստրության գծով ընթացիկ տարվա պլանները վատ են կատարում Արզնու և Երևանի ապակու տարայի գործարանները, կարամելի-մակարոնի ֆաբրիկան և Երևանի ձեթ-օճառի կոմբինատի ձեթի գործարանը։

Մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության մինիստրության գծով ընթացիկ տարվա պլանի կատարման ասպարեզում վատ են աշխատում Երևանի սառցակոմբինատը և Երևանի յուղասառցարանը։

Թեթև արդյունաբերության մինիստրության գծով ընթացիկ տարվա առաջին կիսամյակի պլանի կատարումը չապահովեցին Երևանի № 1 և Լենինականի № 2 կոշկեղենի ֆաբրիկաները, Լենինականի կարի ֆաբրիկան և Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկան։

Տեղական արդյունաբերության մինիստրության գծով շարունակում է անբավարար աշխատել շրջսովետների գործկոմների շրջանային արտկոմբինատների մեծամասնությունը։

Հայարհխորհրդի գծով ընթացիկ տարվա կիսամյա պլանը կատարված է 93,7 տոկոսով։ Պլանները թերակատարել են 106 արտելներից 58-ը։

Ինչպես երևում է վերը բերված տվյալներից, պլանների ընդհանուր կատարման հետևում թաքնված են մեծ թվով ձեռնարկություններ, որոնք չեն կատարում պլանները։

Մինիստրությունների և տնտեսական օրգանների պարտիական կազմակերպություններն ու ղեկավարները պետք է իրենց ուշադրությունը կենտրոնացնեն այդ ձեռնարկությունների աշխատանքներում եղած թերությունները վերացնելու վրա և հասնեն այն բանին, որ չլինի ետ մնացող և ո՛չ մի ձեռնարկություն։

Պարտիական կազմակերպությունները պետք է պարզաբանեն այդ ձեռնարկությունների կոլեկտիվներին, որ եթե նրանք ետ չմնային պլանների



կատարման ասպարեզում, ապա ռեսպուբլիկայի արդյունաբերությունը ավելի շատ արտադրանք կտար։

Արդյունաբերական ձեռնարկությունների և տրանսպորտի աշխատանքում մյուս բացասական կողմը արտադրական կարողությունների և ներարդյունաբերական ռեզերվների անբավարար օգտագործումն է։

Այդպիսի գործարանները ամեն տարի կատարում են իրենց արտադրական պլանները, սակայն հնարավորություններ ունեն և կարող են ներգործարանային ռեզերվները օգտագործելու դեպքում երկրին տալ լրացուցիչ արտադրանք։

Ձերժինսկու անվան գործարանը սարքավորումն օգտագործում է 55—60 տոկոսով։

Էլեկտրամեքենաշինական գործարանը լրիվ չի օգտագործում եղած սարքավորումը։ Ընթացիկ տարվա 6 ամսում գործարանի սարքավորումը օգտագործվել է միայն 60—65 տոկոսով։

Կաբելի գործարանը իր սարքավորումն օգտագործում է 65—70 տոկոսով։

Սահմանված կարողությունները անբավարար են օգտագործվում նաև Տեղական արդյունաբերության մինիստրության էջմիածնի, Ղափանի ու Նոր Բայազետի մեխանիկական գործարաններում։

Երևանի ավտոդողերի գործարանը հնարավորություն ունի ավելի էֆեկտիվ կերպով օգտագործելու սարքավորումը։ Երկու ավտոկլավ գործի դնելու դեպքում եղած սարքավորմամբ գործարանը կարող է արտադրանքի թողարկումն ավելացնել համարյա 30 տոկոսով։

Այս ձեռնարկությունների ղեկավարները և համապատասխան մինիստրությունները ձգձգում են այդ հարցերի լուծումը և բավարար չափով օրինակ չեն վերցնում առաջավոր ձեռնարկություններից, որոնք մեծ նախաձեռնություն և պետական մոտեցում են հանդես բերում այս խնդրի լուծման գործում։

Իբրև դրական օրինակ կարելի է բերել Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանը, որը մեծ հաջողություններ է ցույց տվել գործարանի սկզբ-



նական նախագծային կարողությունն արագորեն յուրացնելու գործում։

Ս. Մ. Կիրովի անվան գործարանի ղեկավարների կողմից մտցված և Միութենական կառավարության կողմից քննության առնված առաջարկները՝ արտադրանքի թողարկումը 25 տոկոսով ավելացնելու հնարավորության մասին, ընթացիկ տարում գործարանն արդեն իրականացնում է։ Գործարանի ինժեներա-տեխնիկական աշխատողները՝ ընկ. ընկ. Հակոբյանը, Տեր-Ղազարյանը և ուրիշներ, արտադրության նորարարների հետ միասին ներկայումս մշակում են առանց մեծ կապիտալ ներդրումների, սահմանված սիստեմով, արտադրանքի թողարկումը ևս 50—60 տոկոսով ավելացնելու հարցը։

Գործարանը այս հաջողություններին կարողացավ հասնել սովետական ձեռնարկություններում արտադրության տեխնոլոգիական պրոցեսը սիստեմատիկաբար կատարելագործելու նշանակությունը ճիշտ գնահատելու շնորհիվ։

Արդյունաբերական ձեռնարկու-

թյունների աշխատանքի մյուս խոշոր թերությունը պետք է համարել շատ գործարաններում ու ֆաբրիկաներում շահութաբերության և արտադրանքի ինքնարժեքը սիստեմատիկաբար իջեցնելու համար բավարար պայքարի բացակայությունը։

Օրինակ, Ալավերդու քիմիական գործարանի ղեկավարները (դիրեկտոր՝ ընկ. Ավալիանի, պարտկազմակերպության քարտուղար՝ ընկ. Ասլանյան) չեն ապահովում բավարար պայքարը արտադրանքի ինքնարժեքի իջեցման համար, որի հետևանքով 1951 թվականին գործարանը պետությանը տվեց երկու միլիոն ռուբլու, իսկ ընթացիկ տարվա վեց ամսում՝ 495 հազար ռուբլու վնաս։

Երևանի փոքր հիդրոտուրբինների գործարանը (դիրեկտոր՝ ընկ. Հախնազարով, պարտբյուրոյի քարտուղար՝ ընկ. Հարությունյան) վատացրեց գործարանի շահութաբերության ցուցանիշը այն պատճառով, որ սկսեց խոտան տալ ու անարտադրողական ծախսեր կատարել և ընթացիկ տար-



վա վեց ամսում պետությանը տվեց 280 հազար ռուբլու վնաս։

Տեղական արդյունաբերության մինիստրության Երևանի էլեկտրալուսավորման արմատուրայի գործարանը 1952 թվականի առաջին կիսամյակի ընթացքում շահույթների պլանը կատարեց 83,1 տոկոսով, իսկ նույն մինիստրության լաքի ու ներկի գործարանը՝ 70,6 տոկոսով։

Թեթև արդյունաբերության մինիստրության Լենինականի № 2 կոշկեղենի ֆաբրիկան, ցածր տեսակի արտադրանք թողարկելու և աշխատավարձի ֆոնդի գերածախսման հետևանքով, ընթացիկ տարվա առաջին կիսամյակում պլանավորված 248 հազար ռուբլի շահույթի փոխարեն պետությանը տվեց ավելի քան մեկ միլիոն ռուբլու վնաս։

Սննդի արդյունաբերության մինիստրության գծով շարունակում են վնասով աշխատել Հոկտեմբերյանի շրջանի «Արաքս» սովխոզը և Բերիայի շրջանի Թայիրովի անվան սովխոզը։

Կարելի է բերել ոչ քիչ թվով այսպիսի օրինակներ, որոնք ցույց են

տալիս, որ որոշ տնտեսական ղեկավարներ, մինիստրություններ շարունակում են բավարարվել պլանի միայն քանակական կատարումով, չեն թափանցում իրենց վստահված ձեռնարկության տնտեսական հարցերի մեջ և իրենց մակերեսային աշխատանքով վնաս են հասցնում պետական շահերին։

Ղեկավարների կողմից գործը անտնտեսաբար վարելու օրինակ է հանդիսանում Հայկական ՍՍՌ Սննդի արդյունաբերության մինիստրության Երևանի ձեթ-օճառի կոմբինատի տընտեսական գործունեությունը։

1951 թվականի աշնանը կոմբինատն ընդունել էր բամբակի հունդը և այն գործարանի մոտ թափել բաց երկնքի տակ։ Կոմբինատի նախկին դիրեկտոր Խաչատրյանը չէր կազմակերպել հունդի մաքրումը, այն թողել էր անձրևի տակ, որի հետևանքով հունդի մի մասը փչացավ և պակասեց յուղի ելուստը, որով պետությանը ավելի քան 5 միլիոն ռուբլու վնաս հասցվեց։

Ծխախոտի հումքի ընդունման,



պահպանման և վերամշակման կանոնները խախտելու հետևանքով «Արմտաբակսիրդյո» տրեստի (կառավարիչ՝ ընկ. Ղալումյան) սիստեմում յուրաքանչյուր տարի գոյանում են փարմատուրայի (մանրուքի) գերնորմատիվային կուտակումներ և ծխախոտի հումքի մեծ մնացուկներ, որով պետությանը զգալի վնաս է հասցըվում։ 1950 թվականին այդ վնասը կազմեց 930 հազար ռուբլի, իսկ 1951 թվականին՝ 835 հազար ռուբլի։

Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ ուժեղացնել իրենց պահանջկոտությունն այդպիսի ղեկավարների նկատմամբ և հասնել վնասաբերության լիակատար վերացմանը, թույլ չտալով ոչ-արտադրողական ծախսեր և, արտադրությունը հմտորեն կազմակերպելու միջոցով, ապահովել ինքնարժեքի իջեցման ու շահույթների պլանի կատարման առաջադրանքների ճշգրիտ իրագործումը։

Ես կցանկանայի համագումարի ուշադրությունը հրավիրել ևս մի կարևոր հարցի վրա, որը ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկու-

թյունների աշխատանքի մեջ բացասական կողմ է հանդիսանում։ Դա արտադրանքի որակի հարցն է։

Եթե ծանր արդյունաբերության ձեռնարկություններում թողարկվող արտադրանքի որակը տարեցտարի բարելավվում է և բարձր տեսակների արտադրանք թողարկվում է ավելի, քան թե պլանավորված է եղել, ինչպես, օրինակ, «Կանազ» գործարանում, Կիրովի անվան գործարանում, ՍՍՌՄ Սև մետալուրգիայի արդյունաբերության Թումանյանի գործարանում, Կիրովականի քիմիական կոմբինատում և այլն, ապա այդ բանը չի կարելի ասել Թեթև արդյունաբերության մինիստրության, Տեղական արդյունաբերության մինիստրության շատ ձեռնարկությունների վերաբերմամբ և հատկապես Սննդի արդյունաբերության մինիստրության ու Հայարհխորհրդի վերաբերմամբ։

Արտադրվող կոշկեղենի որակը շատ ետ է մնում պլանավորված սորտայնությունից։ Պատրաստի հագուստեղենը մինչև այժմ էլ բաց է



թողնվում առանց բնակչության ճաշակն ու պահանջը հաշվի առնելու։

Դեռևս կարգավորված չէ հրուշակեղենի որակի բարելավման գործը, իսկ սննդի և մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության մի քանի ձեռնարկություններ երբեմն լավորակ արտադրանք են տալիս, իսկ հետո որակը փչացնում են։ Այդպես է պատահում, օրինակ, երշիկեղենի, գարեջրի, գինիների, կոնֆետեղենի որակի հետ։

Հարկավոր է վճռական պայքար մղել ձեռնարկությունների և մինիստրությունների աշխատանքում եղած այս խոշոր թերությունների դեմ և արտադրանքի որակի գծով պետական առաջադրանքները կատարելու ասպարեզում կադրերի մեջ հաստատել խիստ կարգապահություն։

Մինիստրությունները պետք է ուժեղացնեն ձեռնարկությունների նկատմամբ իրենց ղեկավարությունը և թույլ չտան, որ արտադրանքի թողարկումն ավելացնելու դեպքում վատանա արտադրանքի որակը։

Մեր առջև խնդիր է կանգնած՝

ննդի, Թեթև, Մսեղենի-կաթնեղենի ու տեղական արդյունաբերության, ինչպես նաև արհեստագործական կոոպերացիայի ձեռնարկություններն ուժեղացնել ինժեներա-տեխնիկական աշխատողների կադրերով և հասնել այն բանին, որ ձեռնարկություններում ինժեներական պաշտոնները չզբաղվեն պրակտիկներով։

Այս պահանջներից ելնելով հարկավոր է վերանայել բարձր որակավորում ունեցող կադրերի պատրաստման պլանները։

Արդյունաբերական ձեռնարկությունների և տրանսպորտի աշխատանքը բարելավելու գործում հատուկ տեղ են գրավում բանվորների և ծառայողների մեջ աշխատանքային կարգապահության բարձրացման հարցերը։

Ձեռնարկություններում և շինարարություններում աշխատանքի կազմակերպումը և աշխատանքային ժամանակի լրիվ օգտագործումը պետական մեծ նշանակություն ունեն։ Մինչդեռ մի շարք ձեռնարկությունների ղեկավարներ և պարտիական կազմակեր-



պություններ վերջին ժամանակներս թուլացրել են իրենց ուշադրությունն այդ գործի նկատմամբ, որի հետևանքով դեռ շարունակվում են տեղի ունենալ գործալքումներ և բանվորների ու ծառայողների ուշացումներ, ինչպես, օրինակ, Երևանի № 1 կարի ֆաբրիկայում, Գյումուշի հիդրոէլեկտրակայանի շինարարությունում, մահուդի ֆաբրիկայում և այլն։

Այդպիսի ձեռնարկություններում բանվորների ու ծառայողների մեջ և հատկապես երիտասարդ, արտադրության մեջ նոր եկած բանվորների շրջանում քաղաքական-դաստիարակչական թույլ աշխատանք է կատարվել։ Պարտիական կազմակերպությունները և ձեռնարկությունների դիրեկտորները վատ են օգտագործում հասարակական ներգործության միջոցները այն անձանց նկատմամբ, ովքեր խախտում են արտադրական և աշխատանքային կարգապահությունը։

Պարտիական և սովետական կազմակերպությունների խնդիրն է՝ ավելի արագորեն վերջ դնել աշխատանքային կարգապահությունն ամրա-

պնդելու գործի նկատմամբ ոչ ճիշտ, ոչ պետական վերաբերմունքին ձեռնարկություններում, շինարարություններում և տրանսպորտում։

Պարտիական կազմակերպությունները պետք է ուժեղացնեն իրենց պահանջկոտությունը տնտեսական կազմակերպությունների ղեկավարների նկատմամբ և նախազգուշացնեն, որ նրանք անձնական պատասխանատվություն են կրում աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու վերաբերյալ սովետական օրենքները չկատարելու համար։

Մի քանի ձեռնարկություններում պարտիական, պրոֆմիութենական կազմակերպությունների և դիրեկցիաների կողմից սոցիալիստական մրցությունը ղեկավարելու ասպարեզում թույլ են տրվել սխալներ, որոնք արտահայտվել են այն բանում, որ սոցիալիստական մրցության նոր ձևի անվան տակ կիրառվել է սարքավորումը, հաստոցները, շոգեքարշերը, բնակելի ֆոնդը և պետական այլ գույքը առանձին բանվորներին, բրիգադաներին ու ցեխերին այսպես կոչ-



ված «սոցիալիստական պահպանության» հանձնելու պրակտիկան։

Կաբելի գործարանի, ցեմենտի գործարանի, Լենինականի տեքստիլ կոմբինատի, Հոկտեմբերյանի կոնսերվի գործարանի և երկաթուղային տրանսպորտի պարտիական կազմակերպությունները սոցիալիստական մրցության իսկական բովանդակությունն ու էությունը խեղաթյուրող այդպիսի փաստերի կողքով են անցել և մոռացության են տվել, որ սոցիալիստական մրցության գլխավոր խնդիրը արտադրական պլանների և ձեռնարկության աշխատանքի որակական ցուցանիշների կատարումն ու գերակատարումն է։

Այս խնդիրը նենգափոխելու ամեն մի փորձ պարտիայի դիրեկտիվների խեղաթյուրումն է հանդիսանում։

Արդյունաբերության ղեկավարման բնագավառում Հայաստանի պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ արագորեն վերացնել նշված թերությունները և ձեռնարկությունների ղեկավարների գիտակցությանը հասցնել այն, որ արտադրական պլանների ու

որակական ցուցանիշների կատարման ասպարեզում ետ մնալը ամբողջապես կախված է նրանցից, և որ ներկայիս պայմաններում չի կարող հանդուրժելի լինել ժողովրդական տնտեսության որևէ տեղամասում ետ մնալը։

Հայաստանի արդյունաբերության հետագա զարգացման գործում անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել մասսայական սպառման առարկաներ արտադրող արդյունաբերության զարգացմանը և Տեղական արդյունաբերության մինիստրության ու Արհեստագործական կոոպերացիայի ձեռնարկությունների կողմից բաց թողնվող արտադրանքի որակի բարելավմանը։

Տեղական արդյունաբերության գծով պետք է ավելացվի լայն սպառման առարկաների արտադրությունը տեղական հումքից և պետք է վերակառուցվեն այն ձեռնարկությունները, որոնք Հայաստանի տերիտորիայում գտնվող միութենական ձեռնարկություններին զուգահեռ արտադրանք են տալիս։

Օկրուգային արդյունաբերության և



շրջանային արդկոմբինատների գծով պետք է ընդարձակվի շինանյութերի արտադրությունը, այն հասցնելով օկրուգի, շրջանի սեփական պահանջը գերազանցող չափերի։

Ամենամոտիկ տարիների ընթացքում անհրաժեշտ է ընդարձակել շրջանային կենտրոններում և քաղաքներում շրջանային արդկոմբինատների կողմից բնակչության կենցաղային սպասարկման ցանցը։

Արհեստագործական կոոպերացիայի կողմից բաց թողնվող արտադրանքի որակի բարելավման և թողարկվող արտադրանքի ասորտիմենտի կարգավորման խնդիրները պահանջում են Արհեստագործական կոոպերացիայի արտադրությունը վերակառուցել՝ մանր, միատեսակ արտելները միավորելու և միջին չափի մեքենայացված այնպիսի ձեռնարկություններ ստեղծելու տեսանկյունով, որոնք աշխատեն տեղական հումքի և պետական արդյունաբերության մնացուկների բազայի վրա։

Անհրաժեշտ է, որ այս գործում պարտիական և սովետական կազմա-

կերպությունները ամեն տեսակի օգնություն ցույց տան Արհեստագործական կոոպերացիային, ամենից առաջ, տեխնիկական կադրերով, որոնք կարողանան ապահովել արհեստագործական կոոպերացիայի ձեռնարկությունների կողմից բաց թողնվող արտադրանքի որակի բարելավումը։

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆ

Հաշվետու ժամանակաշրջանը բնութագրվում է Հայաստանի գյուղատնտեսության հետագա վերելքով, կոլտնտեսությունների հանրային տնտեսության ամրապնդմամբ ու զարգացմամբ։

1951 թվականի հանրագումարները ցույց են տալիս գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրանքի հետագա աճ, որը ձեռք է բերվել ցանքատարածությունների ընդարձակման, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման, հանրային անասունների գլխաքանակի ավելացման և նրանց մթերատվության բարձրացման շնորհիվ։



Ցորենի արտադրությունն ավելացնելու վերաբերյալ ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի որոշման և Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի 15-րդ համագումարի որոշման կենսագործումով՝ ցանքատարածությունը ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում 1952 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ընդարձակվել է 18 տոկոսով։

Այդ ժամանակամիջոցում հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունն ավելացել է 26,6 տոկոսով, ցորենի ցանքատարածությունը՝ 49,8 տոկոսով։ Հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը 1951 թվականին աճեց նախորդ տարվա համեմատությամբ 14,4 տոկոսով։

Տեղի է ունեցել նաև տեխնիկական ու թանկարժեք կուլտուրաների ցանքատարածությունների որոշ ավելացում։

Բամբակի ցանքատարածությունը 1952 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, աճեց 4 տոկոսով։ Բամբակի յուրաքանչյուր հեկտարի

բերքատվությունը 1951 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, պակասեց 1,4 ցենտներով։ Ծխախոտի ցանքատարածությունը 1952 թվականին աճեց 7 տոկոսով։ Յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը կազմեց 12,5 ցենտներ, 1950 թվականի համեմատությամբ տալով աճ 11,6 տոկոսով։ Շաքարի ճակնդեղի միջին բերքատվությունը կազմեց հեկտարից 200 ցենտներ, 1950 թվականի համեմատությամբ տալով 29 տոկոս աճ։ Կարտոֆիլի բերքատվությունը 1951 թվականին հասավ հեկտարից 110 ցենտների, նախորդ տարվա համեմատությամբ տալով 5 տոկոս աճ։

Խաղողի այգիների տարածությունը հաշվետու ժամանակաշրջանում աճել է 400 հեկտարով և, բացի դրանից, խաղողի հին այգիները վերականգնելու կարգով տնկված է 1.400 հեկտար։

Աճել է նաև պտղատու այգիների տարածությունը 573 հեկտարով։ Բացի դրանից, հին այգիների վերականգնման կարգով տնկված է 2.050 հեկտար. չհաշված խաղողի այգիների ու պտղատու այգիների նոսրությունը վե-



րացնելու ուղղությամբ կատարված աշխատանքները։ Տարեցտարի բարձրանում է խաղողի այգիների և պտղատու այգիների բերքատվությունը։ Կատարված են նաև մերձարևադարձային պտղատու այգիների տնկման առաջադրանքները։

Անասնաբուծության ասպարեզում հանրային անասնաբուծության զարգացման եռամյա պլանը կատարված է.

Խոշոր եղջերավոր անասուններինը՝ 100,2 տոկոսով, ըստ որում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը երեք տարվա ընթացքում ավելացել է 11,6 տոկոսով, իսկ կովերի գլխաքանակը այդ նույն ժամանակամիջոցում աճել է 29 տոկոսով։ Ոչխարների և այծերի գլխաքանակի եռամյա պլանը կատարված է 100,1 տոկոսով, ըստ որում նրանց գլխաքանակը այդ ժամանակաշրջանում աճել է 21 տոկոսով։ Կովերի գլխաքանակի պլանը կատարված է 106,7 տոկոսով, իսկ խոզերի գլխաքանակն այդ ժամանակամիջոցում աճել է 68,2 տոկոսով։ Ձիերի գլխաքանակի պլանը կատար-

ված է 102,5 տոկոսով, ձիերի գլխաքանակը այդ ժամանակամիջոցում աճել է 21,5 տոկոսով։ Թռչունների գլխաքանակի եռամյա պլանը կատարված է 73,5 տոկոսով, երեք տարվա ընթացքում տալով աճ 2,5 անգամ։

Անասնաբուծության քանակական աճին զուգընթաց, բարձրանում է նաև նրա մթերատվությունը։ Կովերի կաթնատվությունը 1951 թվականին կազմեց յուրաքանչյուր ֆուրաժային կովից 705 լիտր, որը նախորդ տարվա կաթնատվությունը գերազանցում է 34 տոկոսով։

Յուրաքանչյուր ոչխարից խուզված բրդի քանակը 1951 թվականին կազմեց 1,7 կիլոգրամ, կամ 1950 թվականի համեմատությամբ աճեց 10 տոկոսով։

Հաշվետու ժամանակաշրջանում կերի կուլտուրաների ցանքատարածությունն աճել է 14 տոկոսով։ Բարձրանում է ինչպես ցանովի խոտաբույսերի, այնպես էլ բնական խոտհարքների բերքատվությունը։

Պատրաստված սիլոսի քանակը 1951 թվականին հասավ 182 հազար տոննայի։ Ընթացիկ տարում պատրաստվում է 200 հազար տոննա սիլոս։



Գյուղատնտեսության աճման հիմքի վրա է՛լ ավելի է ամրապնդվում հանրային տնտեսությունը և բարելավվում են կոլտնտեսությունների բոլոր ցուցանիշները, ինչպես նաև բարձրանում է կոլտնտեսականների աշխատանքի արտադրողականությունը։

Կոլտնտեսությունների տարեկան հաշվետվությունների տվյալներով, 1951 թվականին տեղի է ունեցել անբաժանելի ֆոնդերի հետագա աճ։

Արտադրության հիմնական միջոցների արժեքը 1951 թվականին նախորդ տարվա մակարդակը գերազանցեց 11,5 տոկոսով։

Անբաժանելի ֆոնդերի համալրման համար 1951 թվականին հատկացվել էր մոտ 84 միլիոն ռուբլի։

1951 թվականին կապիտալ շինարարության հիմնական ծախսերը կատարվել են գերազանցապես արտադրական նպատակներով, կոլտնտեսությունների հանրային տնտեսությունն ընդարձակելու համար։

Կոլտնտեսությունների ընդհանուր

դրամական եկամուտը 1951 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ավելացավ 27 միլիոն ռուբլով։

Կոլտնտեսականների աշխատանքի արտադրողականության աճման մասին են վկայում հետևյալ ցուցանիշները.

1951 թվականին կոլտնտեսություններում ծախսվել է 3 միլիոն ավելի աշխօր, քան 1950 թվականին, չնայած նրան, որ 1951 թվականին աշխատունակ կոլտնտեսականների ընդհանուր թիվը կրճատվել էր 5 հազար մարդով՝ արդյունաբերության մեջ և պետական շինարարություններում նրանց մշտական աշխատանքի գնալու հետևանքով։ Յուրաքանչյուր աշխատունակ կոլտնտեսականի միջին վաստակը 1951 թվականին կազմեց 212 աշխօր, 1950 թվականին եղած 195 աշխօրի դիմաց։

Հայաստանի Կ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի երկրորդ պլենումի որոշմանը՝ համապատասխան, կոլտնտեսությունները անցյալ տարի հասան հանրային ֆոնդերի՝ սերմացուի, ապահովագրական և ֆուրաժային ֆոնդերի ուժեղացմանը, ինչպես նաև կոլտըն-



տեսային շուկաներում հացահատիկի ու այլ մթերքների վաճառման ֆոնդերի ավելացմանը։

Ինչպես երևում է վերը բերված ցուցանիշներից, 1951 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, մեծ հաջողություններ են ձեռք բերվել գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրանքն ավելացնելու, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը սիստեմատիկաբար բարձրացնելու գործում։

Առաջընթաց խոշոր քայլ է կատարված հանրային տնտեսությունն ընդարձակելու և կոլտնտեսությունները կազմակերպորեն ամրապնդելու բնագավառում։

Հողագործության և անասնաբուծության զարգացման ասպարեզում 1951 թվականին ձեռք բերված զգալի հաջողությունները այն միջոցառումների արդյունքն են, որ ՀամԿ(բ)Պ Կենտկոմը և Միութենական կառավարությունը ձեռնարկեցին գյուղատնտեսության հետագա տեխնիկական սպառազինման, բոլոր առաջավոր կուլ-

տուրաների, ներառյալ նաև հացահատիկային կուլտուրաների համար հանքային պարարտանյութեր մատակարարելու, կոլտնտեսությունների բոլոր ցանքերը սորտային ու բարելավված սերմացուով ապահովելու ուղղությամբ։ Կառավարությունը կոլտնտեսություններին մատակարարում էր զանազան նյութեր և սարքավորում կապիտալ շինարարության՝ անասնապահական և այլ արտադրական շենքերի, իրրիգացիոն կառուցումների, կոլտնտեսային էլեկտրակայանների և այլ շինարարությունների համար։

Միութենական կառավարության կողմից 1951 թվականին կոլտնտեսություններին բաց թողնված 47 միլիոն 500 հազար ռուբլի գումարով երկարատև վարկը նախորդ տարվա վարկի գումարը գերազանցեց ավելի քան 30 տոկոսով։

Գյուղատնտեսության հետագա վերելքի գործում մեծ դեր խաղաց մանր կոլտնտեսությունների խոշորացումը, որը հնարավորություն տվեց ավելի էֆեկտիվ կերպով օգտագործելու վերջին տարիներին գյուղատնտեսության



տեխնիկական բարձր հագեցվածությունը։

Կոլտնտեսային գյուղացիության շրջանում նկատվող աշխատանքային վերելքը և սոցիալիստական մրցության լայն զարգացումը գյուղատնտեսությունն առաջ մղեցին նրա հետագա զարգացման ուղիով։

Որպեսզի ցույց տանք կոլտնտեսային արտադրության զարգացման այն փոփոխված պայմանները, որոնք ստեղծվել են Միութենական կառավարության օգնության շնորհիվ և նպաստում են գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության ու անասնաբուծության մթերատվության խիստ բարձրացմանը, անհրաժեշտ է, նախ և առաջ, կանգ առնել գյուղատնտեսության մեխանիզացիայի աճման ցուցանիշների վրա։

Հաշվետու ժամանակաշրջանում ռեսպուբլիկայում տեղի է ունեցել մեքենա-տրակտորային կայանների թվի հետագա աճ։ Եթե 1950 թվականին եղել է 46 ՄՏ կայան և մեքենա-անասնաբուծական կայան, ապա 1951 թվականին դրանց քանակը հա-

սավ 50-ի, իսկ 1952 թվականին՝ 53-ի։ Այդ ժամանակամիջոցում ՄՏ կայանների տրակտորային պարկը աճեց 50 տոկոսով, կոմբայնների քանակը 1950 թվականին եղած 285-ից աճեց՝ 1952 թվականին հասնելով 475-ի։ Կալսիչների քանակը 1950 թվականին եղած 378-ից 1952 թվականին հասավ 575-ի։ Ավելացավ նաև բարդ կցորդ մեքենաների քանակը։

Մեքենայական տեխնիկայով այսպիսի հագեցվածությունը հնարավորություն տվեց Հայաստանի լեռնային պայմաններում ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների 94 տոկոսը սպասարկել մեքենա-տրակտորային և մեքենա-անասնաբուծական կայանների միջոցով։

Վերջին երեք տարվա ընթացքում Հայաստանի կոլտնտեսություններում կառուցվել են մոտ երեք հազար տիպային անասնապահական շենքեր։ Սկսվել է անասնապահական ֆերմաների սարքավորումն ու մեքենայացումը։ Արդեն 52 ֆերմաներում դրված են անասունները ջրելու ավտոմատ սարքեր, 30 ֆերմաներում կա-



տարվում է կովերի էլեկտրակիթ, 278 ֆերմաներում սարքավորված են կեր մշակող մեքենաներ։

Ինչպես երևում է այս ամենից, Հայաստանի գյուղատնտեսության հաջողությունները անվիճելի են։ Այդ հաջողությունները, եթե համառոտակի ձևակերպենք, հանգում են գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրանքի սիստեմատիկ ավելացմանը՝ բոլոր կուլտուրաների բերքատվության անընդհատ աճման հետևանքով։

Այսպիսով, ձեռք բերված հաջողությունները բնութագրվում են նախորդ տարվա համեմատությամբ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության անընդհատ վերելքով։

Սակայն գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերված ամեն տեսակի հաջողությունները պետք է գնահատվեն պարտիայի և կառավարության կողմից գյուղատնտեսության առջև դրված գլխավոր խնդրի՝ բոլոր գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, անասնաբուծության մթերատվությունը զգալիորեն

բարձրացնելու, միաժամանակ անասունների գլխաքանակը աճեցնելու խնդրի կատարման տեսակետից։

Հարցը այս տեսակետից դիտելով պետք է ասել, որ բերքատվության և անասնաբուծության մթերատվության աճման տեմպերը կարող են բավարար համարվել, պայմանով, եթե կատարվում ու գերակատարվում են գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության այն առաջադրանքները, որոնք նախատեսված են ժողովրդական տնտեսության զարգացման պետական պլանով։

Եթե գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության ձեռք բերված մակարդակը համեմատենք ժողովրդական տնտեսության զարգացման պետական պլանի հետ, ապա կստացվի, որ 1951 թվականին հայաստանի, բամբակի, ծխախոտի, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի բերքատվությունը ցածր է եղել պետական պլանով սահմանված բերքատվությունից։



Չի ապահովված նաև խաղողի այգիների ու պտղատու այգիների բերքատվության առաջադրանքի կատարումը։

Բազմամյա խոտաբույսերի բերքատվությունը կազմեց 31,4 ցենտներ՝ պլանով նախատեսված 40—45 ցենտների դիմաց։ Բնական խոտհարքների բերքատվությունը կազմեց 15,1 ցենտներ՝ պլանով նախատեսված 16—19 ցենտների դիմաց։

Յուրաքանչյուր ֆուրաժային կովի կաթնատվությունը կազմեց 705 լիտր՝ պլանով նախատեսված 1.100 լիտրի դիմաց։ Յուրաքանչյուր ոչխարից ստացված բրդի քանակը կազմեց 1,7 կիլոգրամ՝ պլանով նախատեսված 2,3 կիլոգրամի փոխարեն։

Ի՞նչ է ասում այս համեմատությունը։

Դա ասում է, որ չնայած ամեն տարի բերքատվության աճմանը և գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրանքի անընդհատ աճին, ձեռք բերված մակարդակը դեռ չի ապահովել բերքատվության և անասնաբուծության մթերատվության

կառավարական առաջադրանքների կատարումը։

Հետևապես, չնայած գյուղատնտեսության զարգացման հարաճուն մակարդակին և նախորդ տարվա համեմատությամբ նրա անընդհատ աճին, այդ աճման տեմպերը բավարար չեն և չեն ապահովում գյուղատնտեսության գլխավոր խնդրի հաջող կատարումը։

Մեզ մոտ, Հայաստանում կայի՞ն արդյոք պայմաններ բերքատվության և անասնաբուծության մթերատվության կառավարական առաջադրանքները կատարելու և գերակատարելու համար։

Վերևում ես խոսեցի այն բացառիկ բարենպաստ պայմանների մասին, որոնք մեզանում կան գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության զգալի բարձրացման համար՝ նրանցից յուրաքանչյուրինը առանձին վերցրած։

Հարց է ծագում, թե ո՞րն է հապա բերքատվության աճման անբավարար տեմպերի պատճառը։

Դրա գլխավոր պատճառը հողագործության ագրոտեխնիկայի ցածր մակարդակն է՝ գյուղատնտեսական մեքենաների անբավարար օգտագործումը գյուղատնտեսական աշխատանքների կատարման ժամկետները կրճատելու համար, ագրո-զոոտեխնիկական միջոցառումների պարզեցումը, իսկ երբեմն էլ անտեսումը կոլտնտեսություններում ինչպես տրակտորային, այնպես էլ դաշտավարական բրիգադների կողմից, գյուղատնտեսական կարևոր աշխատանքների կատարման ցածր որակը կոլտնտեսությունների մեծամասնություններում։ Այսպիսով, ստացվում է, որ չեն կատարվում ՄՏ կայաննեբի, մեքենա-անասնաբուծական կայանների ու կոլտնտեսությունների միջև կնքված պայմանագրերը։

Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրությունը և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Բամբակագործության գլխավոր վարչությունը անբավարար են աշխատել կոլտնտեսականների առաջավոր փորձը և սովետական գյուղատնտեսական գիտության նվաճումները տա-

րածելու ու արմատավորելու ուղղությամբ: Նրանք հաշտվել են հողագործության և անասնաբուծության ցածր կուլտուրայի հետ, չեն օգտագործել իրենց տրամադրված մեծ հնարավորությունները, խելացի կերպով չեն օգտագործել գյուղատնտեսության մասնագետների մեծաթիվ կադրերը և այդ կադրերի նկատմամբ պահանջկոտություն հանդես չեն բերել ագրոզոոտեխնիկական միջոցառումները անվերապահորեն իրականացնելու գործում:

Բավական է միայն մեջ բերել անմիջականորեն արտադրության մեջ աշխատող մասնագետների քանակի վերաբերյալ եղած թվերը: Շրջաններում, կոլտնտեսություններում և ՄՏ կայաններում աշխատում են 629 ագրոնոմ, 643 ագրոտեխնիկ, 194 զոոտեխնիկ, 218 տեխնիկ-անասնաբույժ, 207 անասնաբույժ. 284 անասնաբուժական տեխնիկ, 68 ինժեներ-մեխանիզատոր, 262 տեխնիկ-մեխանիզատոր:

Այսպիսով, Հայաստանի 630 կոլտնտեսություններին սպասարկում են



գյուղատնտեսության 2.500 մասնագետ, որոնցից 1.250-ը կոլտնտեսությունների աշխատողներ են, ընդ որում 280 մասնագետ աշխատում են իբրև կոլտնտեսությունների նախագահներ:

Ինչպես երևում է բերված տվյալներից, կոլտնտեսային արտադրության ագրոտեխնիկայի ցածր մակարդակը չի կարելի բացատրել ագրոտեխնիկական տեսակետից գրագետ կադրերի բացակայությամբ:

Ագրոտեխնիկայի ցածր մակարդակը բացատրվում է նաև այն բանով, որ Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրությունը, Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Բամբակագործության գլխավոր վարչությունը, մի շարք շրջկոմներ և շրջսովետների գործկոմներ թերագնահատում են մեքենա-տրակտորային և մեքենա-անասնաբուժական կայանների աճած կազմակերպող դերը կոլտնտեսություններում ագրո-զոոտեխնիկական միջոցառումների իրականացման գործում և շարունակում են դրանք դիտել իբրև գյուղատնտեսա-

կան աշխատանքներ կատարելու համար մի հասարակ տեխնիկական միջոց։

Հասկանալի է, որ բերքատվության բարձրացման տեմպերն ուժեղացնելու և գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության ու անասնաբուծության մթերատվության կառավարական առաջադրանքները անպայմանորեն կատարելու գործում և գյուղատնտեսության գլխավոր խնդիրը լուծելու գործում մեր պայմաններում կենտրոնական խնդիր է դառնում կոլտնտեսային արտադրության ագրոտեխնիկայի մակարդակի բարձրացումը։

Պարտիական, սովետական և այլ կազմակերպությունների առջև խնդիր է կանգնած՝ իրենց ամբողջ ուշադրությունը կենտրոնացնել կառավարության կողմից նշված ագրո-զոոտեխնիկական միջոցառումների լրիվ իրականացման վրա, առանց բացառության բոլոր կոլտնտեսություններում։ Այս գործում հատուկ դեր է պատկանում մեքենա-տրակտորային



կայաններին և մեքենա-անասնաբուծական կայաններին։

Պարտիական ու սովետական կազմակերպությունների առջև պրակտիկ խնդիր է կանգնած՝ բարձրացնել մեքենա-տրակտորային ու մեքենա-անասնաբուծական կայանների կազմակերպող դերը, դրանք դարձնել կոլտնտեսություններում աշխատանքի պրոգրեսիվ ագրո-զոոտեխնիկական մեթոդների իրականացման ու արմատավորման հիմնական լծակ և բարձրացնել ագրոտեխնիկայի մակարդակը կոլտնտեսային արտադրության մեջ։

Այս հետևությունները, ինչպես նաև գյուղատնտեսության ղեկավարման վիճակի գնահատականը ըստ 1951 թվականի աշխատանքի արդյունքների, Կենտրոնական Կոմիտեն իր որոշմամբ դեռ այս տարվա սկզբին դրեց բոլոր պարտիական կազմակերպությունների, սովետական և գյուղատնտեսական օրգանների առջև։ Հարկավոր է կանգ առնել այն հարցի վրա, թե պարտիական կազմակերպություններն ինչպես են իրագործում Հայաս-

տանի Կ(բ)Պ Կենտկոմի այս դիրեկտիվը և թե ինչպիսի թերություններ կան պարտիական կազմակերպությունների աշխատանքում։

1952 թվականի պլանով նախատեսված է աշնանացան հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունն ընդարձակել 33 հազար հեկտարով, որից 15 հազար հեկտարը գարնանացան հացահատիկային կուլտուրաները կրճատելու հաշվին և 18 հազար հեկտարը նոր հողերի յուրացման հաշվին։

Նոր հողերի հերկումը՝ դրանք աշնանացանի համար նախապատրաստելու նպատակով, անբավարար է ընթանում։ Նոր յուրացվող 18 հազար հեկտար հողերից սահմանված ժամկետում հերկված է միայն 5.786 հեկտար։ Այդ աշխատանքը հատկապես վատ է կատարվում Շամշադինի, Նոյեմբերյանի, Կիրովականի, Կրասնոսելսկի, Սիսիանի, Գորիսի և Ախտայի շրջանների կոլտնտեսություններում։

Պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգանները պետք է



հաշվի առնեն, որ ցորենի ցանքատարածության հետագա ընդարձակումը կարող է ապահովվել միմիայն այն դեպքում, եթե յուրաքանչյուր շրջանում անվերապահորեն կատարվի նոր հողերի յուրացման սահմանված պլանը։

Դրա համար անհրաժեշտ է առաջին հերթին ուժեղ թափով աշխատել հերկման համար նախատեսված հողամասերից քարերը մաքրելու և փոխադրելու ուղղությամբ, ըստ որում այդ աշխատանքը կատարել ոչ միայն ընթացիկ տարվա ցանքի համար նախատեսված հողամասերում, այլև այն հողամասերում, որոնք յուրացվելու են 1953 թվականին։

Հայտնի է, որ կառավարության դիրեկտիվի համաձայն հերկի տարածությունների ընդարձակելու պլանով նախատեսված 150 հազար հեկտարից 53 հազար հեկտարը պետք է հերկվի նոր ոռոգվող հողերում, մինչդեռ վերջին մեկ և կես տարվա ընթացքում ոռոգվել է միայն 5.780 հեկտար։ Ջրային տնտեսության մինիստրության աշխատանքը հողերի ցամաքեց-

ման և ոռոգման ուղղությամբ անբավարար է ընթանում։ 1951 թվականին ջրատնտեսային աշխատանքների ծավալը կատարվեց միայն 76 տոկոսով, իսկ ընթացիկ տարում ութ ամսվա պլանը կատարված է 50,3 տոկոսով։

Հատկապես անբավարար են կատարվում ցամաքեցման ու ոռոգման աշխատանքները Արարատյան դաշտավայրի հողերում, որտեղ ընթացիկ տարվա ութ ամսում կատարվել է աշխատանքների միայն 39 տոկոսը և Թալինի ջրանցքի շինարարությունում, որտեղ կատարվել է տարեկան պլանի միայն 40,6 տոկոսը։

Ջրային տնտեսության մինիստրությունը (մինիստր՝ ընկ. Գ. Աղախանյան) բավարար օպերատիվություն հանդես չի բերում շինարարական աշխատանքները կազմակերպելու գործում։ Նրանց տրամադրված մեծ քանակությամբ մեխանիզմները անբավարար են օգտագործվում։ Շինարարությունների մեծամասնությունը չունի մշտական կոնտինգենտ և նկատվում է բանվորական ուժի մեծ հոսունություն։ Մի շարք օբեկտների շինա-



րարությունը ձգձգվում է նախագծերը ժամանակին չավարտվելու պատճառով։ Չի ապահովվում նաև ջրատնտեսային շինարարության գործում կոլտնտեսականների աշխատանքային մասնակցության պլանի կատարումը։ Հատկապես պետք է նշել աշխատանքային մասնակցության պլանի թերակատարումը Թալինի, Աղինի, Արթիկի, Էջմիածնի, Վեդու և Հոկտեմբերյանի շրջաններում։

Ջրանցքների շինարարությունը ժամանակին ավարտելու և դրանք շահագործման հանձնելու հսկայական նշանակությունը հաշվի առնելով, Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը, Ջրային տնտեսության մինիստրությունը և Երևանի օկրուգային գործկոմը պետք է վերացնեն այս թերությունները և ուժեղացնեն ջրատնտեսային աշխատանքների տեմպերը։

Չնայած խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի աճման պետական պլանի կատարմանը և կովերի գլխաքանակի զգալի աճմանը, ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները տարեցտարի թերակատարում են

կովերի գլխաքանակի ավելացման պլանները։ Կովերի գլխաքանակի աճման 1951 թվականի պլանը կոլտնտեսությունները կատարեցին 86,5 տոկոսով։ Այդ բանի հետևանքով կոլտնտեսություններում կովերի տեսակարար կշիռը խոշոր եղջերավոր անասունների ընդհանուր հոտի մեջ ցածր է և առ 1-ն սեպտեմբերի 1952 թվականի կազմում է ընդամենը 22,1 տոկոս։ Խոշոր եղջերավոր անասունների հոտի մեջ կովերի տեսակարար կշիռը հատկապես ցածր է Ապարանի, Կրասնոսելսկի, Սպիտակի, Կոտայքի, Բասարգեչարի և Ախտայի շրջանների կոլտնտեսություններում։

Հանրային անասնաբուծության կազմակերպման գործում լուրջ թերություն է հանդիսանում կովերի ստերջության դեռ շարունակվող բարձր տոկոսը, որը ամբողջ ռեսպուբլիկայում կազմում է մոտավորապես 30 տոկոս, թեև 1950 թվականի համեմատությամբ կովերի ստերջությունը իջել է 7 տոկոսով։ Առանձին շրջաններում, ինչպես օրինակ Ղուկասյանի, Բասարգեչարի, Վեդու, Միսխանի,



Կիրովականի և մի քանի այլ շրջաններում կովերի ստերջությունը հասնում է 37—45 տոկոսի։

Դրանով էլ հենց բացատրվում է այն հանգամանքը, որ մի շարք շրջանների կոլտնտեսություններ անասունների հանրային գլխաքանակի աճման պլանը կատարում են ոչ թե սեփական վերարտադրության հաշվին, այլ գնումների հաշվին, այդ բանի վրա ծախսելով անբաժանելի ֆոնդի զգալի միջոցներ։

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների խնդիրն է հասնել յուրաքանչյուր տարի կովերի գլխաքանակի աճման այն հաշվով, որ մոտակա երեք տարիների ընթացքում զգալիորեն բարելավվի հանրային հոտի ստրուկտուրան։

Մեղանում զգալիորեն ավելի վատ է թռչնաբուծության զարգացման վիճակը։ Ինչպես հայտնի է, ռեսպուբլիկայում ինկուբատորա-թռչնաբուծական կայանների ցանցը զգալիորեն աճել է և 1952 թվականին հասավ 10-ի, որոնք յուրաքանչյուր տարի կոլտնտեսություններին վաճառում են

մինչև 600—700 հազար ճուտ։ Թվում էր, թե այս բանի առկայության և բոլոր կոլտնտեսություններում թռչնաբուծական ֆերմաներ կազմակերպվելու պայմաններում թռչնաբուծության զարգացման պետական պլանը, որ պահանջում է 1952 թվականին թռչունների գլխաքանակը հասցնել մինչև 400 հազարի, պետք է ոչ միայն կատարվեր, այլև զգալիորեն գերակատարվեր։ Սակայն Գյուղատնտեսության մինիստրության, պարտիական ու սովետական օրգանների և կոլտնտեսությունների վարչությունների անբավարար աշխատանքի հետևանքով ընթացիկ տարում ստացված ճուտերի գլխաքանակի 57 տոկոսը սատկեց։ Այս տարվա սեպտեմբերի 1-ի վիճակով թռչունների գլխաքանակի աճման պլանը կատարված է 70,2 տոկոսով։

Այս տարի անբավարար է ընթանում տիպային անասնապահական շենքերի շինարարության պլանի կատարումը։ 1952 թվականի ժողովրդա-տնտեսական պլանով նախատեսված է կոլտնտեսություններում կառուցել 785



անասնապահական շենք և 20 հազար տոննա տարողությամբ սիլոսային կառուցվածքներ։ Այնինչ մինչև ընթացիկ տարվա սեպտեմբերի 1-ը ավարտված է միայն 215 շենքի կառուցումը և կառուցման պրոցեսում են գտնվում 642 անասնապահական շենքեր։ Անասնապահական շենքերի կառուցման աշխատանքները ծայրահեղորեն անբավարար են ընթանում Վեդու, Ազիզբեկովի, Ղափանի, Նոյեմբերյանի և մի շարք այլ շրջանների կոլտնտեսություններում։

Ընթացիկ տարում վատ է կազմակերպված անտառանյութի մատակարարումը կոլտնտեսություններին Գյուղական ու կոլտնտեսային շինարարության գլխավոր վարչության կողմից (վարչության պետ՝ ընկ. Ռ. Արբահամյան) և Հայկոոպի կողմից (վարչության նախագահ՝ ընկ. Ս. Գեվորգյան)։

Ընթացիկ տարվա պլանով կոլտնտեսություններին պետք է բաց թողնվեր 178 հազար խորանարդ մետր անտառանյութ, մինչդեռ առ 1-ն սեպտեմբերի ներմուծված և հայթայթված

է միայն 85 հազար խորանարդ մետր։
Կոլտնտեսություններին անտառանյութ
մատակարարող Հիշյալ կազմակեր-
պությունները պետք է բարելավեն ի-
րենց աշխատանքը և անպայման կա-
տարեն կոլտնտեսությունների համար
անտառանյութ ներմուծելու ու իրաց-
նելու նշված պլանը։

Պարտիական կազմակերպություն-
ները, Գյուղատնտեսության մինիստ-
րությունը և Գյուղական ու կոլտնտե-
սային շինարարության գլխավոր վար-
չությունը պետք է միջոցներ ձեռք առ-
նեն, որպեսզի մոտակա երկու—երեք
տարվա ընթացքում անասունների և
թռչունների ամբողջ հանրային գլխա-
քանակը ապահովված լինի անասնա-
պահական տիպային շենքերով։

Դեռևս շարունակվում են անբավա-
րար ընթանալ պարտիական ու սովե-
տական օրգանների աշխատանքը հան-
րային անասնաբուծության կերի բա-
զան ամրապնդելու և ընդարձակելու
ուղղությամբ։ 1951 թվականին շատ
կոլտնտեսություններ չկատարեցին կե-
րի կուտակման պետական պլանը, որի
հետևանքով ընթացիկ տարվա գարնա-



նը տեղի ունեցավ կոլտնտեսություննե-
րի ինչպես խոշոր, այնպես էլ մանր
եղջերավոր անասունների մեծ չափերի
հասնող անկում։ Անասունների հատ-
կապես մեծ անկում տեղի ունեցավ
Մարտունու, Ազիզբեկովի, Ղուկասյա-
նի, Բասարգեչարի և Սիսիանի շրջան-
ների կոլտնտեսություններում։

Ընթացիկ տարվա պետական պլա-
նով նախատեսվում է կոլտնտեսու-
թյուններում կուտակել մեկ միլիոն
տոննա կոշտ կեր՝ խոտի վերածած։
Այնինչ մինչև այս տարվա սեպտեմբե-
րի 10-ը կոշտ կերի կուտակման պլա-
նը կոլտնտեսությունները կատարել են
միայն 51,6 տոկոսով։

Բնական խոտհարքների ու ցանովի
կերի կուլտուրաների բերքատվու-
թյունը բարձրացնելու և կերի կուտակ-
ման պլանները կատարելու միջոցով
անասնաբուծության կերի բազայի ու-
ժեղացումը պահանջում է պարտիա-
կան ու սովետական օրգանների ավե-
լի մեծ ուշադրությունը այս գործի
նկատմամբ։ Դրա համար անհրաժեշտ
է արմատապես բարելավել կոլտըն-
տեսությունների ղեկավարումը և ու-

Մեղացնել նրանց ցույց տրվող օգնությունը։

Շրջանային օրգանները պետք է կոնկրետ կերպով զբաղվեն յուրաքանչյուր կոլտնտեսությունով՝ ինչպես կոլտնտեսությունների հանրային անասնաբուծությունը կերով ապահովելու պլանները կազմելիս, այնպես էլ կերի հայթայթման և այն անասնապահական շենքերին մոտեցնելու ժամանակ, ապահովելով կերի ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը։

Անհրաժեշտ է, որ Մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության մինիստրությունը՝ ընկ. Ս. Ղազարյանը ամեն կերպ արագացնի կոմբինացված կերի արտադրման Երևանի գործարանի շինարարությունը։

Ընթացիկ տարվա գյուղատնտեսական աշխատանքների խոշոր թերությունն է հանդիսանում մեքենա-տրակտորային և մեքենա-անասնաբուծական կայանների կողմից աշխատանքների պլանը ժամանակին չկատարելը։

Տրակտորային աշխատանքների պլանի կատարումը հատկապես մեծ



չափով հետ է մնում Գյուղատնտեսության մինիստրության մեքենա-տրակտորային կայաններում։ Մինչև սեպտեմբերի 1-ը նրանք տրակտորային աշխատանքների պլանը կատարել էին միայն 47,1 տոկոսով։ Հատկապես մեծ չափով հետ են մնում Գորիսի, Սիսիանի 2-րդ, Կալինինոյի, Թալինի, Կիրովականի ՄՏ կայանները և Ղուկասյանի ու Մարտունու մեքենա-անասնաբուծական կայանները, որոնք տարեկան պլանը կատարել են միայն 27—35 տոկոսով։

Տրակտորային աշխատանքների պլանի կատարման ասպարեզում մի շարք ՄՏ կայանների հետ մնալը նրանով է բացատրվում, որ եղած մեքենա-տրակտորային պարկը օգտագործվում է անարտադրողաբար։ Շատ տրակտորիստներ ու կոմբայնավարներ արտադրանքի հերթափոխային նորմաները չեն կատարում։ Այս տարի կոլտնտեսությունների կողմից տրակտորային բրիգադաների սպասարկումը կազմակերպվեց ավելի վատ, քան անցյալ տարի։

Մի շարք ՄՏ կայանների՝ Ջրվեժի,

Միկոյանի, Ղարաքաղլարի ու Սիսիանի 1-ին ՄՏ կայանների, ինչպես նաև Սպիտակի և Ղուկասյանի մեքենաանասնաբուծական կայանների դիրեկտորները շարունակում են առաջվա նման անպատասխանատու վերաբերմունք ցուցաբերել խոտհնձի ու կերի սիլոսացման պլանի կատարման, ինչպես նաև անասնաբուծական ֆերմաներում աշխատատար պրոցեսների մեքենայացման նկատմամբ։ Մեքենատրակտորային կայանների և մեքենաանասնաբուծական կայանների միջոցով խոտհունձ կատարելու պլանը մինչև սեպտեմբերի 1-ը կատարված էր 50 տոկոսով, իսկ կերի սիլոսացման պլանը՝ 75,7 տոկոսով։

Այսպիսով, Գյուղատնտեսության մինիստրությունը և Բամբակագործության գլխավոր վարչությունը անբավարար են կատարում Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի պլենումի դիրեկտիվները՝ ՄՏ կայանների մեքենատրակտորային պարկի բարձր արտադրողական օգտագործումն ապահովելու և պայմանագրային աշխատանքները ագրոտեխնիկական լավագույն



ժամկետներում կատարելու վերաբերյալ։ Նրանք քիչ բան են արել մեքենա-տրակտորային կայանները՝ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու, հանրային անասնաբուծությունը զարգացնելու և կոլտնտեսությունների հետագա ամրապնդման գործում վճռական ուժ դարձնելու համար։

Պարտիական կազմակերպությունների աշխատանքում շարունակում է տեղ գտնել կոլտնտեսություններում աշխատանքի կազմակերպման գործի ոչ կոնկրետ ղեկավարումը, որի հետևանքով կոլտնտեսություններում էական սխալներ են թույլ տրվում ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1948 թվականի ապրիլի 19-ի որոշումը իրագործելիս, մասնավորապես աշխատանքի նորմավորման և վարձատրության հարցերում։

Աշխատանքի կազմակերպման հարցերի նկատմամբ շատ պարտիական կազմակերպությունների կողմից ցուցաբերվող վատ ղեկավարության հետևանքով, կոլտնտեսություններում գյուղատնտեսական աշխատանքների

մեքենայացումն ընդլայնելու կապակցությամբ ազատվող բանվորական ուժը օգտագործվում է ոչ ռացիոնալ կերպով, առանց հատուկ անհրաժեշտության պահվում է կոլտնտեսություններում, որով նվազում են աշխօրի արժեքը և կոլտնտեսականների եկամուտները։

Պարտիական կազմակերպությունները պետք է վերջ դնեն կոլտնտեսություններում աշխատանքի կազմակերպման սկզբունքների այս խեղաթյուրումներին, անմիջականորեն ղեկավարեն «Կոլտնտեսություններում աշխատանքի կազմակերպումը բարելավելու, արտադրողականությունը բարձրացնելու և վարձատրությունը կարգավորելու մասին» ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի որոշման իրականացումը կոլտնտեսություններում։

Արտադրական բրիգադների հետագա ամրապնդումը, աշխատանքի կազմակերպման բարելավումը և նրա արտադրողականության բարձրացումը կոլտնտեսություններում՝ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությու-



թյունների անհետաձգելի ու կարևոր խնդիրն է։

Պարտիական կազմակերպությունների կողմից կոլտնտեսությունների ղեկավարման լուրջ թերություններից մեկն է հանդիսանում այն, որ ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններում թույլ են տրվում Գյուղատնտեսական արտելի կանոնադրության խախտումներ։

Այս տարվա գարնանը Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի կողմից անցկացված ստուգումը ցույց տվեց, որ չնայած Գյուղատնտեսական արտելի կանոնադրության խախտումների դեմ պայքարելու մասին ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի 1946 թվականի սեպտեմբերի 19-ի պարզ դիրեկտիվներին, Հայաստանի մի զգալի թվով կոլտնտեսություններում տեղ են գտել կանոնադրության խախտումներ և հանրային բարիքի շռայլում։ Այդ խախտումները քողարկված բնույթ էին կրում։ Պարտիական ու սովետական կազմակերպությունները ժամանակին միջոցներ ձեռք չէին առնում կանոնա-

դրության հնարավոր խախտումները կանխելու և հանցավորներին պատասխանատվության ենթարկելու ուղղությամբ։ Գյուղատնտեսական արտելի կանոնադրության հատկապես լուրջ խախտումներ թույլ էին տվել Վեդու, Ախտայի, Ազիզբեկովի, Մարտունու, Ջանգիբասարի, Արթիկի, Գորիսի, Աշտարակի և այլ շրջանների կոլտնտեսություններում։ Ձեռք առնըված միջոցների շնորհիվ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններին վերադարձվեցին զանազան կազմակերպությունների ու անձանց կողմից ապօրինի կերպով զավթված հանրային հողերը, գանձվեց կոլտնտեսություններից ցածր գներով կամ ձրիաբար զանազան անձանց բաց թողնված մթերքների արժեքը։ Կոլտընտեսություններին վերադարձվեցին նաև կոլտնտեսությունների վարչությունների կողմից շռայլված անասունն ու մթերքները։ Հիմնականում լիկվիդացիայի են ենթարկված կոլտնտեսությունների դեբիտորական պարտքերը, կոլտնտեսականներից և տրակտորիստներից ետ է պահված մթերք-



ների ու դրամական միջոցների մի մասը, որ նրանք ստացել էին գերավանսավորման կարգով, իսկ մնացած մասը ձևակերպված է նրանց հաշվին և սահմանված է մարման կարգը։ Գյուղատնտեսական արտելի կանոնադրության խախտման համար մեղավորները և հանրային սեփականության հափշտակողները պատասխանատվության են ենթարկված։

Գյուղատնտեսական արտելի կանոնադրության պահպանման հարցերի վերաբերյալ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի դիրեկտիվների այսպիսի անբավարար կատարման պատճառներն այն են, որ պարտիական կազմակերպությունները և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը ժամանակին հաշվի չէին առել, որ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի 1946 թվականի որոշումից բխող միջոցառումները 1946—1947 թվականներին հաջողությամբ իրականացվելուց հետո Գյուղատնտեսական արտելի կանոնադրության խախտումները ընդունեցին ծածուկ, քողարկված

ձևեր, որը պահանջում էր այդ երևույթների դեմ պայքարելու նոր մեթոդներ։ Եթե պարտիայի շրջկոմները և շրջսովետների գործկոմները հաջող պայքար էին մղում խախտումների բացահայտ ձևերի դեմ, ապա նոր պայմաններում, երբ այդ խախտումները քողարկված ձև ընդունեցին, պարտիայի շրջկոմները և շրջսովետների գործկոմները չհասկացան, որ անհրաժեշտ է է՛լ ավելի ուժեղացնել վերահսկողությունը շրջսովետների գործկոմների և կոլտնտեսությունների վերստուգիչ հանձնաժողովների կողմից, որոնք կոչված են իրականացնելու կոլտնտեսությունների վարչությունների գործունեության սիստեմատիկ դոկումենտալ-ֆինանսական վերստուգումը։ Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը, իր հերթին, պարտիայի շրջկոմներին ցույց չտվեց, որ անհրաժեշտ է կոլտնտեսություններում ուժեղացնել վերստուգիչ աշխատանքը։

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը, հանրագումարի բերելով կոլտնտեսություններում Գյուղատնտեսական ար-



տելի կանոնադրության խախտումների ստուգման ուղղությամբ կատարված աշխատանքը, միջոցառումներ է նշել, որոնց նպատակն է ուժեղացնել շրջսովետների գործկոմների և կոլտնտեսությունների վերստուգիչ հանձնաժողովների վերահսկողությունը կոլտնտեսությունների վարչությունների ֆինանսական-տնտեսական գործունեության նկատմամբ, կարգավորել հաշվառումն ու հաշվապահությունը կոլտնտեսություններում, պատրաստել կոլտնտեսությունների հաշվային-ֆինանսական աշխատողներ այն հաշվով, որ մոտակա երկու տարվա ընթացքում կոլտնտեսությունները լրիվին ապահովվեն որակյալ հաշվապահներով ու հաշվետարներով, իսկ անասնաբուծական ֆերմաներն ու արտադրական բրիգադները՝ հաշվառուներով, և ուժեղացնել կոլտնտեսային պարտիական կազմակերպությունների ղեկավարությունն ու վերահսկողությունը Գյուղատնտեսական արտելի կանոնադրության պահպանման նկատմամբ։

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի պլե-

նումի կողմից նշված միջոցառումների իրականացումը պետք է ապահովի Գյուղատնտեսական արտելի կանոնադրության խախտումների լիակատար վերացումը և կոլտնտեսությունների հետագա կազմակերպական-տնտեսական ամրապնդումը։

Գյուղատնտեսության ղեկավարման բնագավառում պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ զգալիորեն բարձրացնել բոլոր գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության աճման տեմպերը այն հաշվով, որ բերքատվության և անասնաբուծության մթերատվության կառավարական առաջադրանքները կատարվեն ու գերակատարվեն։

Մեր խնդիրն է խստորեն իրականացնել ագրոտեխնիկական ու զոոտեխնիկական միջոցառումները, հասնելով հողագործության կուլտուրայի բարձրացմանը։ Պարտիական, սովետական և գյուղատնտեսական կազմակերպությունները պետք է լիկվիդացիայի ենթարկեն եղած թերությունները և հետագայում անհաշտու-



թյամբ վերաբերվեն գյուղատնտեսության առանձին տեղամասերի ետ մնալուն։ Կատարելագործելով պարտիական կազմակերպությունների ղեկավարման մեթոդները և դրանք դարձնելով կոնկրետ ու կենդանի, մենք կհասնենք այն բանին, որ լիկվիդացիայի կենթարկվի հանրային տնտեսության զարգացման գործում առանձին կոլտնտեսությունների ետ մնալը։

## III

## ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ, ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ, ԱՐՎԵՍՏԻ ԵՎ ԳԻՏՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Սոցիալիստական շինարարության ընդհանուր հաջողությունների հետ կապված է սովետական ժողովրդի կուլտուրական մակարդակի հետագա վերելքը։

Հաշվետու ժամանակաշրջանը բնութագրվում է մարքսիստական-

լենինյան աշխարհայացքի հիմքի վրա զարգացող ազգային կուլտուրայի զգալի հաջողություններով։

Լեզվաբանության վերաբերյալ ընկեր Ստալինի ուսմունքը հանդիսացավ վիթխարի մի ուժ, որը ժողովրդի կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում հիմնական վերակառուցման անհրաժեշտություն առաջացրեց և լայն ասպարեզ ստեղծեց ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի հետագա զարգացման ու ծաղկման համար։

Հայ ժողովրդի կուլտուրական կյանքի և ստեղծագործական մտքի մեջ երբեք չէր եղել այնպիսի վերելք, ինչպիսին տեղի ունեցավ ընկեր Ստալինի «Մարքսիզմը և լեզվաբանության հարցերը» աշխատության լույս ընծայումից հետո։

Ընկեր Ստալինի ուսմունքի լույսով վերակառուցվեցին միջնակարգ դպրոցների ուսումնական ծրագրերն ու դասագրքերը։ Միջոցներ ձեռք առնվեցին միջնակարգ դպրոցների ուսուցիչների կողմից ընկեր Ստալինի ուսմունքի ստեղծագործական ուսումնա-



սիրման և յուրացման ուղղությամբ, որը մեծ ազդեցություն ունեցավ լեզուների, գրականության, պատմության և այլ առարկաների դասավանդման դրվածքի ընդհանուր բարելավման վրա։

Դպրոցներում դասավանդման որակը բարձրացնելու խնդրի հետագա հաջող լուծման նպատակով Լուսավորության մինիստրությունը կազմեց ուսուցիչների վերապատրաստման եռամյա պլան։ Ուսուցիչների կատարելագործման ինստիտուտի դասընթացները վերջին երկու տարվա ընթացքում անցել են հայոց լեզվի, ռուսաց լեզվի, ֆիզիկո-մաթեմատիկական ու այլ առարկաների 5.482 ուսուցիչ, ինչպես նաև ժողովրդական կրթության բաժինների ու դպրոցների ղեկավար աշխատողներ։

1951—1952 թվականներին ռեսպուբլիկայի դպրոցներն ստացան ռուսաց լեզվի 800 ուսուցիչ, որոնցից 486 ուսուցիչ բարձրագույն և ոչ լրիվ բարձրագույն կրթությամբ։ Այդ, ինչպես և ուրիշ միջոցառումների շնորհիվ ներկայումս միջնակարգ դպրոց-

ների 15.987 ուսուցիչներից 7.133 մարդ ունեն բարձրագույն և ոչ լրիվ բարձրագույն կրթություն։ Այսպիսով, իրագործվում է Հայաստանի Կոմունիստական պարտիայի 15-րդ համագումարի դիրեկտիվը միջնակարգ դպրոցների ուսուցչական կազմի որակը սիստեմատիկաբար բարելավելու մասին։

Մեծ աշխատանք է կատարված նաև միջնակարգ դպրոցների համար դասագրքեր կազմելու ու հրատարակելու ուղղությամբ։ Մինչև 1952 թվականի օգոստոսի 15-ը հրատարակված է եղել 83 անուն դասագիրք՝ 2 միլիոն 200 հազար օրինակ տիրաժով։

Չնայած միջնակարգ դպրոցներում ուսման որակի հետագա բարձրացման համար պայմանների ընդհանուր բարելավմանը, ձեռք բերված մակարդակը դեռևս չի կարելի բավարար համարել։ Դասավանդման որակի համեմատաբար դանդաղ բարելավման պատճառը առաջվա նման ուսուցչական կադրերի հոսունությունն է։

Հայաստանի Կոմունիստական պարտիայի 15-րդ համագումարը և ՀԿ(բ)Պ



Կենտկոմի 4-րդ պլենումը մատնանշեցին Լուսավորության մինիստրության անբավարար աշխատանքը տեղերում ուսուցչական կադրերն ամրապնդելու ասպարեզում։ Սակայն շրջաններում շարունակվում է կադրերի հոսունությունը։ Ժողովրդական կրթության շրջանային բաժինները ինքնագլուխ կերպով ուսուցչական կադրերին տեղափոխում են մեկ դպրոցից մյուսը։ Այսպես, օրինակ, Սևանի միջնակարգ դպրոցի 5-րդ դասարանում 1951—1952 ուսումնական տարվա ընթացքում հայոց լեզվի դասատուները փոխվել են ութ անգամ։ 1951—52 ուսումնական տարում Էջմիածնի շրջանում, առանց մինիստրության և պարտիայի շրջկոմի գիտության, անհիմն կերպով տեղից տեղ են փոխադրվել 65 դիրեկտոր, ուսմասվար և ուսուցիչ։ Վեդու շրջանի Գերավանի 7-ամյա դպրոցում եղած յոթ ուսուցչից 6-ը փոխադրվել են ուրիշ դպրոցներ, իսկ նրանց տեղը նշանակվել են նոր մարդիկ։ Սպիտակի № 2 միջնակարգ դպրոցում 26 ուսուցիչներից տեղափոխված են 14-ը։

Ուսուցչական կադրերի հոսունությունը բացատրվում է նաև այն բանով, որ տեղերում համապատասխան օգնություն ցույց չի տրվում ուսուցիչներին։ Անհրաժեշտ է նշել շրջսովետների մի քանի գործկոմների վատ աշխատանքը ուսուցիչների համար տներ կառուցելու գործում։ Ուսուցիչների համար տներ կառուցելու մասին ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը հատկապես վատ է կատարվում Կոտայքի, Ախտայի, Աշտարակի, Ղափանի, Սիսիանի և Էջմիածնի շրջսովետների գործկոմների կողմից։

Բարձրագույն ուսումնական հաստատություններում ուսումը շարունակելու համար միջնակարգ դպրոցներում սովորողների անբավարար պատրաստության հիմնական պատճառը Հայկական ՍՍՌ և ՌՍՖՍՌ դպրոցների ուսումնական պլանների միջև գոյություն ունեցող մեծ տարբերությունն է։ Ինչպես հայտնի է, ռեսպուբլիկայի դպրոցներում, բացի ՌՍՖՍՌ դպրոցների համար մշակված ուսումնական պլանով նախատեսվող առարկաներից, պետք է անցնեն նաև



հայոց լեզու, հայոց գրականություն, հայ ժողովրդի պատմություն, Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիան և Հայաստանի տնտեսական աշխարհագրություն։ Այս առարկաների դասավանդումը անհրաժեշտություն է առաջացնում կրճատելու այնպիսի հիմնական առարկաներին հատկացված ժամերը, ինչպիսիք են մաթեմատիկան (116 ժամով), աշխարհագրությունը (103 ժամով), կենսաբանությունը (16,5 ժամով), ֆիզիկան (16 ժամով), հոգեբանությունը (33 ժամով), օտար լեզուն (363 ժամով) և նկարչությունը (83 ժամով)։

Այսպիսի դրության հետևանքով ռեսպուբլիկայի դպրոցներում հիմնական առարկաները անցնում են ոչ բավականաչափ լրիվ, մակերեսորեն, սովորողների չափից դուրս ծանրաբեռնվածության պայմաններում։ Այս բանը բացասաբար է անդրադառնում սովորողների առաջադիմության վրա և խանգարում է բուհերում ուսումը հաջողությամբ շարունակելու համար լիարժեք և խոր գիտելիքներ ստանալուն։ Ռեսպուբլիկայի միջնակարգ

դպրոցներում սովորողների կողմից կայուն և խոր գիտելիքներ ստանալը հնարավոր է միմիայն այն դեպքում, երբ հիմնական առարկաների համար հատկացված դասաժամերի քանակը հավասարեցվի դասաժամերի այն քանակին, որ այդ նույն առարկաների համար հատկացված են ՌՍՖՍՌ-ի դպրոցներում, ինչպես նաև զգալի չափով ավելացվի ռուսաց լեզվի ուսուցման համար հատկացված ժամերի քանակը, որը հայկական դպրոցների շրջանավարտներին հնարավորություն կտա հաջողությամբ շարունակելու ուսումը ինչպես ռեսպուբլիկայում, այնպես էլ Մոսկվայում, Լենինգրադում և Սովետական Միության մյուս քաղաքներում։

Դրա համար պահանջվում է ուսումնական պլանի մեջ ավելացնել ընդհանուր առմամբ 1.023 ժամ։ Ժամերի այդպիսի լրացուցիչ քանակությունը չի կարելի տեղավորել ուսման տասնամյա ժամկետի սահմաններում, քանի որ Հայկական ՍՍՌ դպրոցների գոյություն ունեցող ուսումնական պլանով շաբաթական բեռնավորումը



արդեն գերազանցում է ՌՍՖՍՌ-ի դպրոցների շաբաթական բեռնավորումից։

Ներկայումս Հայկական ՍՍՌ Լուսավորության մինիստրությունը Կառավարությանը ներկայացնելու համար մշակում է Հայկական ՍՍՌ դպրոցներում 11-ամյա ուսուցում մտցնելու հարցը, որը կլուծի միջնակարգ դպրոցներում ուսուցման որակն արմատապես բարելավելու խնդիրը։

Վերջին երկու տարվա ընթացքում տեղի է ունեցել բուհերի հետագա ընդարձակում՝ ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության և կուլտուրայի աճած պահանջներին համապատասխան։ Ստացիոնար բուհերում սովորողների թիվը հասել է 11.832 մարդու, չհաշված հեռակա բուհերի ուսանողներին։ Զգալիորեն ավելացել է շրջանավարտների թիվը։ 1952 թվականին բուհերը տվել են 2.500 շրջանավարտ, այդ թվում 224 ագրոնոմ, 171 զոոտեխնիկ և անասնաբույժ, 220 ինժեներ, 1.080 մանկավարժական կադրեր, իսկ մնացածը այլ մասնագիտությունների գծով։ Բարելավվել է

նաև բուհերի պրոֆեսորա-դասախոսական կազմը։ Բուհերի պրոֆեսորա-դասախոսական կազմի ընդհանուր թվի 1.343 մարդուց 114-ը գիտությունների դոկտոր-պրոֆեսորներ են, 536-ը դոցենտներ և գիտությունների թեկնածուներ։

Վերջին տարիների ընթացքում, «Բարձրագույն ուսումնական հաստատություններում հասարակական գիտությունների դասավանդումը բարելավելու միջոցառումների մասին» ՀամԿ(բ)Պ Կենտկոմի դիրեկտիվից հետո, բուհերի նկատմամբ պարտիական օրգանների ղեկավարության գործում հիմնական ուշադրությունը կենտրոնացված է եղել հասարակական գիտությունների դասավանդումը բարելավելու վրա։ Այդ նպատակով ՀԿ(բ)Պ Կենտկոմը, բուհերում հասարակական գիտությունների դասավանդման վիճակի մանրամասն ուսումնասիրությունից հետո, սիստեմատիկաբար քննարկել է հասարակական գիտությունների դասավանդման հարցերը և կոնկրետ միջոցառումներ է նշել այն բարելավելու ուղղությամբ։



Դրա հետևանքով բացահայտվեցին մի շարք թերություններ ու սխալներ, որոնք հիմնականում հանգում էին կարդացվող դասախոսությունների և անցկացվող սեմինար պարապմունքների մեծամասնության գաղափարական-տեսական ցածր մակարդակին։ Մարքսիստական-լենինյան թեորիայի շարադրման գործում թույլ էին տրվում թալմուդիզմ և տիրացուականություն։ Կարդացվող դասախոսությունների մեջ բավարար չափով չէին պարզաբանվում ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթացի և մարքսիզմ-լենինիզմի կլասիկների մյուս աշխատությունների հիմնական գաղափարները։ Անբավարար չափով էր բացահայտվում բուրժուական և պրոլետարական իդեոլոգիաների արմատական հակադրությունը, սովետական, սոցիալիստական հասարակարգի գերազանցությունը կապիտալիստականի նկատմամբ։ Համարյա բացակայում էր ժամանակակից ռեակցիոն թեորիաների լուրջ քննադատությունը, սեմինար պարապմունքներն անց էին կացվում պրիմիտիվ եղանակով։

Պարզվեց, որ դասավանդման դըրվածքը հատկապես վատ է եղել Զոոանասնաբուժական ինստիտուտի, Խ. Աբովյանի անվան մանկավարժական ինստիտուտի, Գյուղատնտեսական ինստիտուտի և Ռուսական մանկավարժական ինստիտուտի Մարքսիզմ-լենինիզմի հիմունքների ամբիոններում։ Այդ կապակցությամբ անհրաժեշտ եղավ վերանայել հասարակական գիտությունների ամբիոնների կազմը՝ դրանք ավելի որակյալ դասատուներով ուժեղացնելու նպատակով։ Զգալի աշխատանք է կատարված բուհերում համատեղությունները վերացնելու ուղղությամբ և բոլոր բուհերն ապահովված են իրենց հիմնական կադրերով։

Եթե կիրառված այս միջոցառումների հետևանքով բուհերում դասավանդման աշխատանքի մեջ որոշ բարելավում է կատարվել, ապա նույնը առայժմ չի կարելի ասել բուհերի ամբիոնների գիտա-հետազոտական աշխատանքի վերաբերմամբ։

Երևանի Պետական համալսարանը, որը ռեսպուբլիկայի խոշոր բարձ-



րագույն ուսումնական հաստատությունն է, հաշվետու ժամանակաշրջանում չի հրատարակել ոչ մի մոնոգրաֆիական աշխատություն։ Պրոֆեսորա-դասախոսական կազմի զգալի մասը սահմանափակվել է հոդվածներ գրելով։ Բուհերի գիտական խորհուրդները և ամբիոնները չեն վերահսկում պրոֆեսորա-դասախոսական կադրերի աշխատանքը և նրանց նկատմամբ պահանջկոտություն հանդես չեն բերում գիտա-հետազոտական աշխատանքները ժամանակին ու բարձր որակով կատարելու գործում։ Ամբիոններում գիտա-հետազոտական աշխատանքների թույլ դրվածքը բացասաբար է անդրադառնում ինչպես ամբիոնների անդամների գիտական աճի, այնպես էլ դասավանդման որակի վրա։ Մինչդեռ ուսանողների մասնակցությունը ամբիոնների գիտա-հետազոտական աշխատանքին և ուսանողներին գիտա-հետազոտական աշխատանքի ունակություններ պատվաստելը անգնահատելի օգնություն ցույց կտար ինչպես նրանց հետագա գիտական աշխատանքին, այնպես էլ

ժողովրդական տնտեսության պրակտիկ հարցերը լուծելիս ստեղծագործական մոտեցում ունենալու գործին։

Բուհերի ղեկավարները և պարտիական կազմակերպությունները պետք է վերացնեն բուհերում դասավանդման դրվածքի մեջ գոյություն ունեցող թերությունները, հատուկ ուշադրություն նվիրելով գիտա-տեսական արժեք և կոմունիստական շինարարության համար պրակտիկ նշանակություն ունեցող հարցերի ուղղությամբ գիտա-հետազոտական աշխատանքի ուժեղացմանը։

Պարտիական կազմակերպությունները գրականության և արվեստի զարգացումը ղեկավարելու գործում ելել են իդեոլոգիական հարցերի վերաբերյալ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումներից, և կոնկրետ միջոցառումներ են մշակել Հայաստանի Կոմունիստական պարտիայի 15-րդ համագումարի նշած թերությունները վերացնելու ուղղությամբ։ Համագումարից հետո Հայաստանի Սովետական գրողների միության ղեկավարությունն ամրացվեց այնպիսի մարդկանցով, որոնք ավելի



լավ են հասկանում սովետական ընթերցողի կողմից գեղարվեստական գրականությանը ներկայացվող պահանջները։ Միության նոր ղեկավարությունն աշխուժացրեց ստեղծագործական սեկցիաների աշխատանքը և ապահովեց հայ գրողների երկերի լայն մասշտաբներով հրատարակումը ռուսերեն լեզվով, որի շնորհիվ այդ երկերը դարձել են ընթերցողների լայն շրջանների սեփականություն։ 1951 և 1952 թվականներին արդեն ռուսերեն լեզվով հրատարակված են հայ գրողների 60-ից ավելի երկեր։

Հաշվետու ժամանակաշրջանում հայ գրողների հայերեն լեզվով լույս տեսած վեպերը մեզ բերում են այն հետևության, որ Հայաստանի Սովետական գրողների միությունը պետք է հաստատակամորեն շարունակի աշխատանքը գաղափարապես ու գեղարվեստորեն բարձրարժեք երկեր ստեղծելու վերաբերյալ պարտիայի դիրեկտիվներն իրագործելու ուղղությամբ, երկեր, որոնք ավելի սուր կերպով խարազանեն անցյալի մնացուկները և ավելի ռեալիստորեն արտացոլեն սովե-

տական ժողովրդի պայքարը կոմունիստական հասարակարգի կառուցման համար։

Հարկավոր է Հայաստանի Սովետական գրողների միության ուշադրությունը հրավիրել դրամատիկական երկեր, մասնավորապես երգիծական ժանրի երկեր ստեղծելու անհրաժեշտության վրա, որոնք կարողանան լայնորեն օգտագործվել դրամատիկական թատրոններում բեմադրելու և կինոֆիլմեր ստեղծելու համար։

Հաշվետու ժամանակաշրջանում ամենից ավելի մեծ նվաճումներ ունի Հայաստանի Սովետական կոմպոզիտորների միությունը, որը կարողացել է ստեղծել տարբեր ժանրերի մի ամբողջ շարք երաժշտական երկեր։

Դրա հետ միասին անհրաժեշտ է նշել, որ երաժշտության զարգացման գործում կոմպոզիտորները միակողմանիորեն տարվում են սիմֆոնիկ երկերի, հատկապես կանտատաների, սուիտաների և նման այլ ձևերի ստեղծմամբ, այն ժամանակ, երբ սովետական թեմայով օպերաներ ու բալետներ ստեղծելու ասպարեզում նր-



րանց առջև կանգնած հիմնական խնդիրը դեռևս լուծված չէ։

Դրամատիկական թատրոնների աշխատանքի մեջ առավել ուշագրավ իրադարձություն հանդիսացավ Ա. Արաքսմանյանի և Զ. Վարդանյանի «Միքայել Նալբանդյան» պիեսի բեմադրությունը Սունդուկյանի անվան թատրոնում։ Թատրոնը ճիշտ է մոտեցել ռևոլուցիոներ-դեմոկրատ Մ. Նալբանդյանի կերպարի բացահայտման հարցին։

Անհրաժեշտ է, որ պարտիական կազմակերպությունները, գրականության և արվեստի աշխատողները իրենց հետագա գործունեության ընթացքում ավելի հաստատակամորեն ձգտեն այն խնդիրների լրիվ իրականացմանը, որ ՀամԿ(բ)Պ Կենտկոմը դրել է սովետական գրականության ու արվեստի առջև։

Գիտական աշխատանքի զարգացման բնագավառում հաշվետու ժամանակաշրջանում տեղի է ունեցել Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի գիտա-հետազոտական ինստիտուտների և հիմնարկների վերակառուցում։

Լեզվի մասին ընկեր Ստալինի ուսմունքի լույսով, երբ առավելագույն պարզությամբ որոշվեցին սովետական լեզվաբանության զարգացման սկզբունքները և ուղիները, արմատապես վերակառուցվեց Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի մի շարք գիտական հիմնարկների թեմատիկան։

Ակադեմիայի Հասարակական գիտությունների բաժանմունքի գիտական հիմնարկներում սկսեցին նոր ձևով մշակվել հայոց լեզվի ծագման և նրա զարգացման ներքին օրինաչափության հարցերը, ժամանակակից հայերենի մաքրության, լեզվաշինարարության սկզբունքների, ընդհանուր լեզվաբանության և հայերենագիտության բնագավառում հակագիտական, ռեակցիոն-բուրժուական կոնցեպցիաների մերկացման հարցերը։

Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի լեզվի ինստիտուտը, որին գլխավորում է Գիտությունների ակադեմիայի իսկական անդամ Գ. Ղափանցյանը, զգալի աշխատանք է ծավալել ինստիտուտի առջև դրված խնդիրներն իրականացնելու ուղղու-



թյամբ։ Ինստիտուտն արդեն հրատարակել է ակադեմիկոս Գ. Ղափանցյանի, ակադեմիկոս Հ. Աճառյանի և ուրիշների մի շարք աշխատությունները և տպագրության է պատրաստել Ռուս-հայերեն ակադեմիական մեծ բառարանի առաջին հատորը։

Լեզվի ինստիտուտի և բուհերի համապատասխան ամբիոնների կողմից անց են կացվել ստեղծագործական դիսկուսիաներ, որտեղ քննադատության են ենթարկվել սխալ, հակագիտական հայացքները։ Այդ դիսկուսիաների շնորհիվ ավելի ճիշտ սկսեց գործել Լուսավորության մինիստրությանը կից Տերմինաբանական կոմիտեն։

Լեզվի ինստիտուտը թույլ աշխատանք է կատարում հայոց լեզվի քերականության ուսումնասիրման ու մշակման ուղղությամբ և անբավարար չափով է լեզվաբանության երիտասարդ մասնագետներ պատրաստում, որի հետևանքով ինստիտուտը դեռևս չի կարողանում իրականացնել գիտական աշխատողների համատեղությունները վերացնելու ցուցումը։

Իր աշխատանքը վատ է վերակառուցում Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Գրականության ինստիտուտը։ Այս ինստիտուտը դեռ չի կատարել սովետահայ գրականության հարցերի մշակման, մարքսիստական-լենինյան գրականագիտության վերաբերյալ աշխատությունների, ժամանակակից ռեակցիոն բուրժուական գրականագիտությունը մերկացնող աշխատությունների ստեղծման ուղղությամբ նրա առջև դրված խնդիրը։

Այն բանի հետևանքով, որ ինստիտուտի դիրեկտոր ընկ. Մ. Մկրյանը քիչ է զբաղվում գիտական աշխատանքների կազմակերպման և դրանց տեսական մակարդակի բարձրացման գործով, լինում են դեպքեր, երբ ինստիտուտի սեկտորներում առանձին աշխատությունների քննարկման ժամանակ աշխատողները թույլ են տալիս մեթոդոլոգիական ու քաղաքական սխալներ և այդ սխալները ոչ ոքի կողմից չեն մերկացվում։ Ինստիտուտի առանձին աշխատողներ հայ գրականության պատմության մի քանի



հարցերի գնահատման մեջ կանգնած են «միասնական հոսանքի» թեորիայի դիրքերում։ Գրականության ինստիտուտի ավագ գիտական աշխատող Խորեն Սարգսյանը հայ գրականության դասագրքի ներածության մեջ աշխատել է ամեն կերպ մեղմացնել այն արմատական տարբերությունները, որոնք գոյություն են ունեցել Մ. Նալբանդյանի ռևոլյուցիոն դեմոկրատիզմի և Ստ. Նազարյանի բուրժուական լիբերալիզմի միջև, այդ ժամանակաշրջանի հայ գրականության բոլոր հիմնական հարցերը հանգեցնելով ազգային-ազատագրական շարժման, լուսթյան մատնելով այն հարցերը, որոնք կապված են եղել դասակարգային պայքարի և առանձին խմբերի ու հասարակական հոսանքների միջև մղվող պայքարի հետ։

Գրականության ինստիտուտը չի քննադատել Խորեն Սարգսյանի և մի քանի ուրիշների տեսակետը, որոնք իրենց աշխատությունների մեջ քարոզ են տալիս «միասնական հոսանքի» բուրժուա-նացիոնալիստական կոնցեպցիաներ։

Գրականության ինստիտուտի պարտկազմակերպությունը և նրա քարտուղար ընկ. Ստեփանյանը սքողում են սխալները, փոխանակ մերկացնելու այդ վնասակար կոնցեպցիան և գրականության պատմության հարցերում պաշտպանելու պարտիական գիծը։

Գիտությունների ակադեմիայի Պատմության ինստիտուտը հրատարակել է հայ ժողովրդի պատմության առաջին հատորը, որի մեջ նոր ձևով են լուսաբանված հայ ժողովրդի պատմության և մասնավորապես հայ ժողովրդի գենեզիսի ու կազմավորման ակտուալ հարցերը։ Ստեղծված է «Սովետական Հայաստանի պատմության ուրվագծեր» կոլեկտիվ աշխատությունը։

Սակայն ինչպես հենց ինստիտուտում, այնպես էլ ռեսպուբլիկայի պատմական ֆրոնտում թույլ են տըրվում լուրջ սխալներ։ Առանձին պատմաբանների ու փիլիսոփաների ինչպես աշխատությունների, այնպես էլ հայացքների մեջ դեռևս մերկացված ու մինչև վերջը հաղթահարված չեն հայ հին, բուրժուա-կղերական պատ-



մագրության բուրժուա-նացիոնալիստական կոնցեպցիաները։

Վերջին տարիների ընթացքում մի շարք դրական աշխատանքներ են կատարել Երկրաբանության, Քիմիայի, Ջրաէներգետիկ ինստիտուտները։ Վերջինս հետաքրքիր աշխատանքներ է կատարել Գյումուշի կառուցվող հիդրոէլեկտրակայանի գծով և էքսպերիմենտալ բնույթի մեծ աշխատանք է իրագործել կառուցվող Կույբիշևյան հիդրոհանգույցի համար։

Բյուրականի աստրոֆիզիկական աստղադիտարանը, որին գլխավորում է Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ ընկ. Վ. Համբարձումյանը, շարունակում է հաջողությամբ զարգացնել խմբային աստղագոյացման ուղղությամբ կատարվող հետազոտությունները։

Բնակչության կուլտուրական մակարդակը բարձրացնելու գործում ըզգալի դեր է խաղում կուլտուր-լուսավորական հիմնարկների լայնորեն ճյուղավորված ցանցը։ Հաշվետու ժամանակաշրջանում աճել է գրադարանների և ակումբների ցանցը։ Դրա հետ

միասին աճել է նաև գրադարանների գրքային ֆոնդը, որը ներկայումս բաղկացած է 5 և կես միլիոն կտոր գրքից։

Աճում է կուլտուր-լուսավորական հիմնարկների նշանակությունը աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում։ Տեղերում կուլտուր-լուսավորական աշխատանքին մեծ օգնություն են ցույց տալիս Քաղաքական ու գիտական գիտելիքների տարածման ընկերությունը և ռեսպուբլիկայի Կուլտուր-լուսավորական հիմնարկների գործերի կոմիտեին կից դասախոսական բյուրոն։

Որոշ բարելավում ունենք նաև բնակչության կինոսպասարկման գործում։ Կինոսարքավորումների քանակը հասնում է 321-ի, չհաշված պրոֆմիութենական կինոսարքավորումները։ Ներկայումս կինոթատրոններ են կառուցվում Գորիսի, Ախուրյանի, Սպիտակի, Կալինինոյի, Ազիզբեկովի և այլ շրջաններում։

Անհրաժեշտ է, որ հետագայում պարտիական և սովետական օրգանները է՛լ ավելի ուժեղացնեն իրենց ուշադրությունը կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատանքի նկատմամբ, որոնք անմիջականորեն սպասարկում են բնակչության լայն մասսաներին և կարևոր դեր են խաղում բնակչության կուլտուրական մակարդակի հետագա վերելքի գործում։



Հաշվետու ժամանակաշրջանում շարունակվում էր քաղաքի և գյուղի աշխատավորների բարեկեցության հետագա աճը։ Բանվորների ու ծառայողների միջին աշխատավարձի և կոլտնտեսականների եկամուտների աճմանը զուգընթաց, բարեկեցության աճման գործում բացառիկ դեր է խաղում լայն սպառման ապրանքների մանրածախ գների սիստեմատիկ իջեցումը։ 1952 թվականին կառավարության որոշմամբ, հետպատերազմյան տարիների ընթացքում հինգերորդ անգամ կատարվեց ապրանքների գների իջեցում։

Բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձի և կոլտնտեսականների եկամուտների անընդհատ աճման հետևանքով աճել է ապրանքաշրջանառությունը։ Ապրանքաշրջանառու-

թյան ծավալը Հայաստանում 1951
թվականին, 1950 թվականի համեմա-
ությամբ, աճեց 9,8 տոկոսով, իսկ
ընթացիկ տարվա առաջին կիսամյա-
կում, 1951 թվականի նույն ժամանա-
կաշրջանի համեմատությամբ, ապ-
րանքաշրջանառության ծավալը աճել
է 10,7 տոկոսով։
Հաշվետու ժամանակաշրջանում մեծ
չափով ընդարձակվել է առևտրի և հա-
սարակական սննդի ցանցը։ Այդ ըն-
դարձակումը կատարվել է գլխավորա-
պես մասնագիտացված խանութների
հաշվին։ Առևտրի սիստեմն ավելի ու
ավելի է հագենում սառցարանային
սարքավորումներով և այլ կահավոր-
մամբ։
Չնայած առևտրի ընդհանուր աճին,
Հայկական ՍՍՌ Առևտրի մինիստրու-
թյան և Հայկոոպի սիստեմները շա-
րունակում են աշխատել անբավարար։
Ապրանքաշրջանառության 1951 թը-
վականի պլանը Առևտրի մինիստրու-
թյան սիստեմում կատարված է 95
տոկոսով, իսկ Հայկոոպի սիստեմում՝
89 տոկոսով։ Ապրանքաշրջանառու-
թյան 1952 թվականի առաջին կիսամ-



յակի պլանը ամբողջ ռեսպուբլիկա-
յում կատարված է 97 տոկոսով։
Առևտրական սիստեմը մինչև այժմ
դեռ լրիվին առողջացված չէ։ Դեռևս
բարձր է ապրանքային մնացորդների
տոկոսը հատկապես Հայկոոպի սիս-
տեմում։ Եթե ռեսպուբլիկայի ընդհա-
նուր ապրանքաշրջանառության մեջ
Հայկոոպի սիստեմի տեսակարար կշի-
ռը կազմում է 23 տոկոս, ապա ապ-
րանքային մնացորդների գծով Հայ-
կոոպի տեսակարար կշիռը կազմում է
40 տոկոս։
Առևտրի մինիստրության և Հայկոո-
պի ղեկավարությունը անբավարար
պայքար է մղում առևտրական սիս-
տեմում պետական մանրածախ գների
խախտման դեպքերի դեմ։ Շարունա-
կում են տեղի ունենալ ապրանքների
շռայլման, հափշտակման և փչացման
դեպքեր խանութներում և բազանե-
րում։ Առևտրական սիստեմը կադրե-
րով ամրացնելու ուղղությամբ աշխա-
տանք կատարվում է, սակայն բնակ-
չության մատակարարման սիստեմում
շատ տեղամասեր դեռևս խճողված են
այնպիսի մարդկանցով, որոնք անբա-

րեխղճորեն են վերաբերվում դեպի բնակչության սպասարկումը։

Հաշվետու ժամանակաշրջանում տեղի է ունեցել բնակչության բուժսպասարկման հետագա ընդարձակում և բարելավում։ Ընդարձակվել է հիվանդանոցային ու ծննդաբերական հիմնարկների ցանցը, ինչպես նաև ավելացել է գյուղում աշխատող բժիշկների թիվը։ Հիվանդանոցային մահճակալների քանակը աճել է 8 տոկոսով։ Մատնանշված ժամանակամիջոցում Երևան, Լենինական և Կիրովական քաղաքներում կազմակերպվել են երեք նոր հիվանդանոցներ։ Աշտարակի, Աղինի, Մեղրու, Նոր Բայազետի, Սիսիանի, Կալինինոյի, Գորիսի և այլ շրջաններում գյուղական տեղամասային ամբուլատորիաներին կից կազմակերպվել են հիվանդանոցներ։ Ծննդաբերական մահճակալների ընդհանուր թիվը գյուղում աճել է 40 տոկոսով, ընդարձակվել է կանանց և մանկական կոնսուլտացիաների ցանցը։ Հիվանդանոցներում մանկական մահճակալների քանակը աճել է 22 տոկոսով։



Առողջապահության մինիստրու-
թյունը հաջողությամբ իրականացնում
է մասնագիտացված բուժօգնությունը
ռեսպուբլիկայի շրջաններում՝ կազմա-
կերպելով ռենտգենյան բաժանմունք-
ներ, կլինիկա-դիագնոստիկական լա-
բորատորիաներ, վիրաբուժական բա-
ժանմունքներ և ականջի, կոկորդի-
քթի հիվանդությունների կաբինետ-
ներ։ Վերջին մեկ և կես տարվա ըն-
թացքում քաղաքներից գյուղական
շրջաններն են ուղարկվել 215 բժիշկ։
Գյուղի բուժսպասարկումը ուժեղացնե-
լու հետևանքով մեծ չափով նվազել են
մալարիայով և ինֆեկցիոն այլ հի-
վանդություններով հիվանդանալու
դեպքերը։

Առողջապահության բնագավառում
մեր խնդիրն է է՛լ ավելի բարելավել
բնակչության բուժսպասարկման որա-
կը, ժամանակին դիագնոզել հիվանդ-
ներին և բուժման էֆեկտիվ միջոցներ
ձեռք առնել։

Հետագայում հարկավոր է շարու-
նակել բնակչության մասնագիտաց-
ված բուժսպասարկումը բարելավելու
ուղղությամբ միջոցառումների կիրա-

ումը, սիստեմատիկաբար ավելացնելով բժիշկների թիվը ըստ առանձին մասնագիտությունների։

Հաշվետու ժամանակաշրջանում կատարվել է ռեսպուբլիկայի քաղաքների և շրջանային կենտրոնների հետագա բարեկարգում։ 1951 թվականին ռեսպուբլիկայում շահագործման է հանձնվել 74 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, իսկ ընթացիկ տարվա վեց ամսում՝ 14.300 քառակուսի մետր՝ այս տարվա պլանով նախատեսված 83 հազար քառակուսի մետրից, չհաշված 120 հազար քառակուսի մետր տարածությամբ 3.000 տները, որոնք կառուցվում են անհատական վարկավորման կարգով։

Նոր ոռոգվող հողերի յուրացման նպատակով՝ վերաբնակեցման վարչության գծով կառուցվում են 9 գյուղ վերաբնակիչների համար։ Այդ գյուղերն ունեն բարեկարգ տներ, ջրմուղ, էլեկտրական լուսավորություն և հասարակական նշանակություն ունեցող այլ շենքեր։

Զգալիորեն բարելավվել է բնակչության կոմունալ սպասարկումը։ Այս



բնագավառում անհրաժեշտ է նշել շրջանային կենտրոնների և գյուղական բնակավայրերի բարեկարգման աշխատանքների ետ մնալը Երևան, Լենինական և Կիրովական քաղաքների բարեկարգումից։

Պարտիական կազմակերպություններն իրենց հետագա աշխատանքում պետք է ավելի շատ զբաղվեն շրջանային կենտրոններում կատարվող բարեկարգման աշխատանքների ղեկավարմամբ, հատուկ ուշադրություն նվիրելով կառուցվող ձեռնարկությունների բանվորական ավանների բարեկարգմանը։

## IV

## ՊԱՐՏԻԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՎ ՊԱՐՏԻԱԿԱՆ-ԿԱԶՄԱԿԵՐՊԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՎԻՃԱԿԸ

16-րդ համագումարին Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիան իր շարքերում ունի 64.255 կոմունիստ, այդ թվում պարտիայի անդամ՝ 58.957 մարդ և պարտիայի անդամության թեկնածու՝ 5.298 մարդ։

Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի 15-րդ համագումարից հետո պարտիական կազմակերպությունն աճել է 2.630 մարդով։

Պարտիական կազմակերպություններն սկսել են ավելի լավ կենսագործել ՀամԿ(բ)Պ Կենտկոմի դիրեկտիվները պարտիայի աճման վերաբերյալ, ավելի ուշադիր կերպով են ուսումնասիրում պարտիայի մեջ ընդունվողների քաղաքական ու գործարար հատկությունները, պարտիայի մեջ ընդունելության ժամանակ համարյա վերացված է հախուռն մոտեցումը։

Սակայն մի շարք պարտիական կազմակերպություններ դեռ շարունակում են սխալներ թույլ տալ պարտիայի մեջ ընդունված թեկնածուների հետ կատարվող աշխատանքում, որի հետևանքով ընդունվածներից շատերը երկար ժամանակ թեկնածու են մնում, խախտելով թեկնածուական ստաժի սահմանված ժամկետը։

Թեկնածուների հետ կատարվող աշխատանքը հատկապես անբավարար է Երևան քաղաքի Մոլոտովյան ռայո-



նում, որտեղ ժամկետանց ստաժով պարտթեկնածուները կազմում են 79 տոկոս, Իջևանի շրջանում՝ 70 տոկոս, Ազիզբեկովի շրջանում՝ 89 տոկոս, Ապարանի շրջանում՝ 70 տոկոս և Կիրովականի շրջանում՝ 61 տոկոս։ Իսկ առհասարակ՝ պարտիայի անդամության թեկնածուների ընդհանուր թվի 56 տոկոսը ժամկետանց թեկնածուական ստաժ ունեն։

Նման վիճակի պատճառը պետք է համարել պարտիայի անդամության թեկնածուների հետ պարտիական կազմակերպությունների անբավարար աշխատանքը նրանց պարտիայի Կանոնադրությունն ու ծրագիրը ուսումնասիրող խմբակներում ներգրավելու ուղղությամբ, նրանց թույլ ներգրավումը պարտիական կազմակերպությունների աշխատանքում և այդ գործում անբավարար վերահսկողությունն ու ղեկավարությունը պարտիայի շրջանային կոմիտեների կողմից։

Անհրաժեշտ է նաև նշել, որ մի շարք պարտիական կազմակերպություններ անբավարար են կատարում կոմունիստների հաշվառման ու մեկ պար-

տիական կազմակերպությունից մյուսը փոխադրվելու համար ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշմամբ սահմանված կարգը։ Կոմունիստների հաշվառման քարտերի ստուգման հետևանքով պարզվել է, որ մոտավորապես 400 կոմունիստներ պարտիական կազմակերպությունից հեռացել են առանց հաշվառումից դուրս գալու։ Այս տեսակետից դրությունը հատկապես վատ է Ապարանի շրջանային պարտիական կազմակերպությունում, Լենինականի քաղաքային, Վեդու և Շամշադինի շրջանային պարտկազմակերպություններում։

Մի շարք պարտիական կազմակերպություններ՝ Լենինականի, Նոյեմբերյանի, Հոկտեմբերյանի և Վեդու, շարունակում են խախտել պարտիայի անդամ և թեկնածու ընդունվածներին պարտիական փաստաթղթեր տալու համար դիրեկտիվներով սահմանված ժամկետները։

Հաշվետու ժամանակաշրջանում Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի մեջ կատարվել են ստրուկտուրային-կազմակեր-



պական փոփոխություններ։ Ղեկավարությունը շրջկոմներին և սկզբնական պարտիական կազմակերպություններին մոտեցնելու նպատակով ռեսպուբլիկայում մտցվեց օկրուգային բաժանում և ստեղծվեցին պարտիայի Երևանի, Կիրովականի ու Լենինականի օկրուգային կոմիտեներ, Երևանի քաղաքային պարտիական կազմակերպությունը թողնելով անմիջականորեն Հայաստանի Կ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի ենթակայությանը։

Կիրովական քաղաքի պարտիական կազմակերպության աճման հետևանքով քաղաքային պարտկազմակերպությունն առանձնացվեց Հայաստանի Կ(բ)Պ օկրուգային կոմիտեի անմիջական ենթակայության տակ և ստեղծվեց պարտիայի Կիրովականի քաղաքային կոմիտե։

Օկրուգներ կազմակերպվելու ժամանակվանից անցած յոթ ամիսները ցույց տվին, որ որոշ չափով բարելավվել է շրջկոմների ղեկավարումը, կոլտնտեսային շինարարության հարցերը լուծվում են ավելի օպերատիվ կերպով և տեղական կադրերը լայնո-

րեն ներգրավվել են պարտիական-սովետական աշխատանքում։

Դրա հետ միասին, օկրուգների կազմակերպումը Հայաստանի Կ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեին հնարավորություն տվեց ավելի խոր ու ավելի կոնկրետ կերպով զբաղվել ռեսպուբլիկական սովետական-տնտեսական օրգանների աշխատանքով, ինչպես նաև իդեոլոգիական ճակատի հարցերով։

Հաշվետու ժամանակաշրջանում կազմակերպական աշխատանքի բարելավման և պարտիական աշխատանքի գաղափարական-քաղաքական մակարդակի բարձրացման կապակցությամբ տեղի էր ունենում պրոֆմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների և սովետական-տնտեսական օրգանների նկատմամբ պարտիական ղեկավարության հետագա ուժեղացում։

Պարտիական կազմակերպությունների աշխատանքում գաղափարականության աճը ձեռք է բերվել, ամենից առաջ, պարտիայի անդամների մեջ պրոպագանդիստական աշխատանքն



ուժեղացնելու և մարքսիզմ-լենինիզմի հիմունքները նրանց կողմից յուրացվելու հետևանքով։

Այս գործում վճռական դեր խաղաց պարտիական լուսավորության ցանցը։ Զգալիորեն աճել է խմբակներում, քաղդպրոցներում և ինքնուրույն ուսուցման միջոցով մարքսիզմ-լենինիզմի թեորիան ուսումնասիրողների թիվը։

Անցյալ ուսումնական տարվա վերջում խմբակների և քաղդպրոցների թիվը հասավ 2.895-ի։ Մեծ չափով աճել է ՀամԿ(բ)Պ պատմությունն ուսումնասիրող հիմնական տիպի խմբակների և բարձր տիպի խմբակների թիվը ի հաշիվ պարտիական լուսավորության ցանցի ստորին օղակների։

Համարյա երկու անգամ աճել է ՀամԿ(բ)Պ պատմության, փիլիսոփայության և քաղաքատնտեսության ուսումնասիրման բարձր տիպի խմբակների թիվը։ Նկատվում է նաև մարքսիզմ-լենինիզմի հիմունքները ինքնուրույն կերպով ուսումնասիրողների թվի աճ։ Կոմունիստների ինքնուրույն ուսուցումը, իբրև մարքսիզմ-լենինիզմի

թեորիայի ուսումնասիրման հիմնական մեթոդ, ընդունել է ավելի կազմակերպված ձևեր։ Ինքնուրույն ուսումնասիրողներն ունեն իրենց անհատական պլանները։ Նրանց սիստեմատիկ օգնություն են ցույց տալիս այդ նպատակով պարտիական օրգանների կողմից առանձնացված 2.528 կոնսուլտանտ։

Պարտիական կոմիտեների քարտուղարները և պարտիական կազմակերպությունների բյուրոներն սկսել են ավելի շատ զբաղվել ինքնուրույն ուսումնասիրողներով, նրանց համար կազմակերպելով տեսական զրույցներ, դասախոսություններ, խմբական ու անհատական կոնսուլտացիաներ։ Բարելավվել է պրոպագանդիստական կադրերի՝ խմբակների ու քաղդպրոցների ղեկավարների կազմը։ 5.456 պրոպագանդիստներից և կոնսուլտանտներից 4.536-ն ունեն բարձրագույն և ոչ լրիվ բարձրագույն կրթություն։

Բարելավվել է պարտիական օրգանների աշխատանքը պրոպագանդիստների հետ։ Նրանց որակավորու-



մը բարձրացնելու համար Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմին կից ամեն տարի կազմակերպվում են ամառային դասընթացներ, իսկ տարվա ընթացքում՝ կարճատև սեմինար-խորհրդակցություններ։ Բացի դրանից, պարտիայի բոլոր քաղկոմներին ու ՇՐՋկոմներին կից գործում են պրոպագանդիստների մշտական սեմինարներ։

Մշտապես գործող սեմինարների պարապմունքները գաղափարական ավելի բարձր մակարդակով էին անցկացվում Ստալինյան ու Սպանդարյանի ռայոններում, Նոր Բայազետի, Աշտարակի, Ախուրյանի և մի քանի այլ շրջաններում։

Պարտիական օրգանների կողմից կոմունիստների տեսական ուսուցման նկատմամբ այսպիսի ուշադրության հետևանքով ընթացիկ տարում մենք հասանք այն բանին, որ գոյություն ունեցող խմբակների և բոլոր տիպի դպրոցների 91 տոկոսը ավարտեցին ուսումնական ծրագիրը, միաժամանակ բարելավելով ուսումնասիրվող նյութի յուրացումը։

Ուժեղացել է պարտիայի Երևանի և Լենինականի քաղկոմներին կից Մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանների դերը ղեկավար կադրերի և ինտելիգենցիայի մեջ մարքսիզմ-լենինիզմի պրոպագանդայի գործում։ Ներկայումս երեկոյան համալսարաններում սովորում են մոտ երկու հազար մարդ։

Արդյունքներն ավելի մեծ կլինեին, եթե մի շարք պարտիական կազմակերպություններում պրոպագանդայի դրվածքի մեջ գոյություն չունենային խոշոր թերություններ։ Նոյեմբերյանի, Կիրովականի, Աղինի, Էջմիածնի, Վեդու պարտիական կազմակերպություններում դեռ անբավարար են ղեկավարում քաղաքական ուսուցման որակը բարձրացնելու աշխատանքը։ Հիշյալ շրջկոմներին կից պրոպագանդիստների մշտապես գործող սեմինարների պարապմունքները դեռ շարունակում են կրել ձևական բնույթ, չի ապահովվում շրջանի բոլոր պրոպագանդիստների հաճախումը պարապմունքներին։ Պարապմունքները հաճախ անցնում են առանց ուսումնասիրվող թեմաների



ստեղծագործական քննարկման, սահմանափակվում են միայն դասախոսությունների ընթերցմամբ, որոնք հաճախ ցածրորակ են լինում։ Այս պատճառով էլ հիշյալ շրջաններում հաճախ կարելի է հանդիպել, երբ պրոպագանդիստները պարապմունքներն անց են կացնում գաղափարական ցածր մակարդակով, խորապես չեն պարզաբանում «ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց»-ի հիմնական դրույթները և թեորիայի հարցերը չեն կապակցում կոմունիստական շինարարության պրակտիկ խնդիրների հետ։ Կոմունիստների ինքնուրույն ուսուցումը կազմակերպելու գործում լուրջ թերություններ գոյություն ունեն Մարտունու, Թալինի, Ախտայի, Ապարանի, Կիրովականի պարտիական կազմակերպություններում, որտեղ դեռ շարունակում են վատ ղեկավարել կոմունիստների քաղաքական ինքնակրթությունը, թույլ են վերահսկում և քիչ են օգնում նրանց, այդ գործը ամբողջապես վերավստահելով կոնսուլտանտներին։

Պրոպագանդիստական աշխատանքի

թերություն պետք է համարել նաև այն, որ բարձր տիպի խմբակների մի մասը պարապմունքները անց է կացնում հիմնական տիպի խմբակների մակարդակով, առանց ինչպես հարկն է ուսումնասիրելու մարքսիզմ-լենինիզմի կլասիկների՝ ծրագրով նախատեսված երկերը։

Հարկավոր է լուրջ ուշադրություն դարձնել պրոպագանդիստական աշխատանքում գոյություն ունեցող թերությունների վերացմանը, եթե մենք ուզում ենք հասնել պարտիական լուսավորության ցանցի աշխատանքի հետագա բարելավման։

Պարտիայի Կենտկոմը, օկրուգային կոմիտեները, քաղաքային կոմիտեները և շրջանային կոմիտեները իրենց աշխատանքի մեջ պետք է ապահովեն պարտիական լուսավորության ամբողջ ցանցի աշխատանքի գաղափարական մակարդակի հետագա բարձրացումը, պլանաչափ անցումը ստորին օղակներից՝ բարձրագույնին, բարձր տիպի խմբակների քանակի և մարքսիզմ-լենինիզմը ինքնուրույն կերպով ուսումնասիրողների թվի ա-



ճում այն կապակցությամբ, որ մեծ թվով կոմունիստներ ավարտում են ուսուցումը պարտիական լուսավորության ստորին օղակներում։

Նկատի ունենալով, որ պարտիական լուսավորության ցանցում պարապմունքների գաղափարական մակարդակի բարձրացման խնդիրը հիմնականում կախված է պրոպագանդիստական կադրերից, պարտիական օրգանները պետք է ուժեղացնեն իրենց մշտական հոգատարությունը նրանց նկատմամբ, սիստեմատիկաբար բարելավեն պրոպագանդիստների կազմը և աշխատեն նրանց որակավորումը բարձրացնելու համար։

Սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է ուժեղացնեն իրենց ղեկավարությունը և վերահսկողությունը այն բանի նկատմամբ, թե կոմունիստներն ինչպես են կատարում իրենց քաղաքական մակարդակը բարձրացնելու և մարքսիզմ-լենինիզմի հիմունքներին տիրապետելու ասպարեզում իրենց ուղղակի պարտականությունները։

Պետք է մեծ նվաճում համարել այն,

որ ներկա համագումարի ժամանակ արդեն ավարտվել է Վ. Ի. Լենինի երկերի 35 հատորանոց լիակատար ժողովածուի չորրորդ հրատարակության թարգմանությունը և լույս ընծայումը հայերեն լեզվով։ Ավարտվել է Ի. Վ. Ստալինի Երկերի ժողովածուի ռուսերեն լեզվով լույս տեսած բոլոր 13 հատորների թարգմանությունն ու հրատարակումը հայերեն լեզվով։ Հրատարակման համար պատրաստվում է Կ. Մարքսի «Կապիտալ»-ի բոլոր երեք հատորների երկրորդ հրատարակությունը։ Ընդարձակվել է մարքսիզմ-լենինիզմի կլասիկների առանձին երկերի հրատարակումը հայերեն լեզվով։

Ուժեղացել է նաև պարտիական կազմակերպությունների ամենօրյա ագիտացիոն-մասսայական աշխատանքը։ Պարտիական կազմակերպություններն սկսել են աշխատավորների կոմունիստական դաստիարակության ուղղությամբ կատարվող աշխատանքի մեջ ավելի լայնորեն ներգրավել ինչպես պարտիական կադրերին, այնպես էլ անպարտիական ինտելիգենցիային՝ ուսուցիչներին, բը-



ժիշկներին, ինժեներներին, ագրոնոմներին և ուրիշներին։

Հաշվետու ժամանակաշրջանում ռեսպուբլիկայի ղեկավար ակտիվը աշխատավորների առջև 14 անգամ հանդես է եկել զեկուցումներով ռեսպուբլիկայի և Սովետական Միության էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման, Սովետական կառավարության արտաքին քաղաքականության և այլ հարցերի շուրջը։

Բարելավվել է պարբերական մամուլի նկատմամբ պարտիական օրգանների ղեկավարությունը։ Ներկայումս լույս են տեսնում ռեսպուբլիկական 7 թերթ, գիտական, քաղաքական և գրական 8 ժուռնալ, շրջանային 32 թերթ։ Այս տարվա մայիս ամսից սկսեցին լույս տեսնել օկրուգային թերթեր՝ «Կայծ» թերթը Կիրովականում և «Բանվոր» թերթը Լենինականում։ Ընթացիկ տարվանից շրջանային թերթերը շաբաթական մեկ անգամվա փոխարեն սկսեցին լույս տեսնել երկու անգամ։

Մեր մամուլն սկսել է ավելի օպերատիվ կերպով լուսաբանել աշխա-

տավորների կյանքն ու նրանց ստեղծագործ աշխատանքը, ռեսպուբլիկայի բնակչության սեփականությունը դարձնելով քաղաքների և գյուղերի առաջավորների նվաճումները։

Պետք է նշել, որ այս դրական երևույթների կողքին մեր թերթերն իրենց աշխատանքում ունեն նաև բացասական կողմեր։ Ցածր է թերությունների քննադատության մակարդակը թերթերի էջերում։ Քննադատական հոդվածները հաճախ կրում են ընդհանուր, առարկայազուրկ բնույթ, խուսափում են քննադատել աշխատողների թերությունները՝ առանց անձնավորությունները նկատի ունենալու։ Թերթերի խմբագրությունները բավականաչափ նախաձեռնություն հանդես չեն բերում պարտիական-սովետական ու տնտեսական օրգանների աշխատանքում եղած թերությունները ժամանակին երևան բերելու գործում։

Թերթերի աշխատանքում խոշոր թերություններից մեկն է աշխատավորների նամակներին ժամանակին չարձագանքելը։ Թերթերի խմբագրություն-



ները բավականաչափ հաստատակամություն հանդես չեն բերում աշխատավորների նամակների մեջ արծարծվող հարցերի լուծման գործում և սահմանափակվում են նամակները համապատասխան հիմնարկներին ուղարկելով։

Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ լիկվիդացիայի ենթարկել պարբերական մամուլի աշխատանքում գոյություն ունեցող թերությունները, ուժեղացնել թերթերի աշխատանքի ղեկավարումն ու վերահսկողությունը, խմբագրություններին ամեն տեսակի օգնություն ցույց տալ թերթի էջերում և աշխատավորների նամակներում արծարծվող հարցերի լուծման գործում։

Անհրաժեշտ է նաև պրակտիկ միջոցառումներ կիրառել ժուռնալիստական կադրերի պատրաստման և մամուլի աշխատողների որակավորումը բարձրացնելու ուղղությամբ։

Վերջին ժամանակներս թեև նկատվում է կոմերիտական կազմակերպությունների աշխատանքի նկատմամբ պարտիական կազմակերպությունների

ղեկավարման որոշ բարելավում այն իմաստով, որ շրջկոմների բյուրոների նիստերում ու պլենումներում, պարտիական ակտիվների ժողովներում ավելի հաճախակի են քննարկվում կոմերիտական աշխատանքի հարցեր, այնուամենայնիվ այդ գործում խոշոր թերություններ կան։

Հաշվետու ժամանակաշրջանում կոմերիտմիության մեջ ընդունվել են մոտ 68 հազար երիտասարդներ։ Այս բանը պարտիական կազմակերպություններին պարտավորեցնում էր ուժեղացնել կոմերիտական օրգաններին ցույց տրվող իրենց օգնությունը՝ գաղափարական-քաղաքական և դաստիարակչական աշխատանքը կազմակերպելու ասպարեզում։

Սակայն կոմերիտական կազմակերպությունների մեծամասնությունում անբավարար է կազմակերպվում դաստիարակչական աշխատանքը։ Կոմերիտական ժողովները անկանոն են հրավիրվում, քննարկման համար առաջադրվող հարցերը վատ են նախապատրաստվում, որի հետևանքով քննարկման ժամանակ հարցի գաղա-



փարական ու դաստիարակչական կողմը նսեմանում է։

Սկզբնական կոմերիտական կազմակերպությունները թերագնահատում են պետական ու աշխատանքային կարգապահությունը խախտող և հակահասարակական արարքներ թույլ տվող առանձին կոմերիտականների զանցանքներին անհապաղ վերաբերմունք ցույց տալու կարևորությունը։ Այս կապակցությամբ անբավարար է իրականացվում կադրերի դաստիարակության և նրանց նկատմամբ հասարակական ներգործման բոլշևիկյան սկզբունքը։

Պարտիական կազմակերպությունների և Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմի կողմից ցույց տրվող թույլ ղեկավարության հետևանքով շատ կոմերիտական կազմակերպություններ բավականաչափ ակտիվ մասնակցություն չեն ցուցաբերում Գյուղատնտեսական արտելի կանոնադրության խախտումների դեմ, պետական ու աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու համար մղվող պայքարին։

Կոմերիտական կազմակերպությունների ամբողջ քաղաքական-դաստիարակչական աշխատանքի մեջ անբավարար տեղ է գրավում սովետական հայրենասիրության, ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության, հատկապես Անդրկովկասի ժողովուրդների միջև բարեկամության և աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության գաղափարների պրոպագանդան երիտասարդության շրջանում։

Հայաստանի կոմերիտական կազմակերպությունների աշխատանքում մյուս խոշոր թերությունը քննադատության և ինքնաքննադատության անբավարար ծավալումն է։ Կոմերիտականների քննադատական դիտողություններին հաճախ չեն արձագանքում, միջոցներ ձեռք չեն առնում բացահայտված թերությունները վերացնելու համար, իսկ կոմերիտական օրգանների և հենց Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմի առանձին ղեկավարներ քննադատությունն ընդունում են հիվանդագին կերպով և բավականաչափ



ինքնաքննադատաբար չեն մոտենում իրենց աշխատանքի գնահատմանը։

Այս բոլոր թերությունները մատնանշեց իր որոշման մեջ ՀամԼԿԵՄ Կենտկոմը, որն այս տարվա սեպտեմբերի 6-ին լսեց Հայաստանի կոմերիտմիության Կենտրոնական Կոմիտեի հաշվետվությունը։

Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ յուրաքանչյուր շրջանի համար մշակել միջոցառումներ Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմի աշխատանքի մասին ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումն իրականացնելու ուղղությամբ և հետամտյում է՛, ավելի ուժեղացնել իրենց ղեկավարությունը կոմերիտմիության նկատմամբ, նրան ամեն տեսակի օգնություն ցույց տալով երիտասարդության մեջ դաստիարակչական աշխատանքի գաղափարական-քաղաքական մակարդակը բարձրացնելու գործում։

Պարտիական կազմակերպությունները պետք է ուժեղացնեն իրենց ղեկավարությունը նաև պրոֆմիութենական կազմակերպությունների նկատմամբ, նրանց ուշադրությունը ուղղե-

լով առաջին հերթին բանվորների և ծառայողների կուլտուր-կենցաղային սպասարկման բնագավառում եղած թերությունների վերացման, արտադրության մեջ աշխատանքի պաշտպանության վերաբերյալ սովետական օրենսդրության ճշգրիտ պահպանման նկատմամբ վերահսկողությունն ուժեղացնելու վրա, թույլ չտալով անվտանգության տեխնիկայի պահանջների խախտումներ ինչպես լեռնահանքային ձեռնարկություններում ու խոշոր շինարարություններում, այնպես էլ արդյունաբերության մյուս ճյուղերում։

Անհրաժեշտ է, որ պարտիական կազմակերպությունները հասնեն ռեսպուբլիկական կոմիտեների և Հայաստանի Արհեստակցական միությունների խորհրդի աշխատանքի բարելավմանը՝ տեղական պրոֆմիութենական կազմակերպությունների և բանվորների ու ծառայողների կոլեկտիվների հետ նրանց կենդանի կապն ուժեղացնելու իմաստով։

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը մեծ ուշադրություն է նվիրել պարտիական



կադրերի պատրաստման ու վերապատրաստման գործին։ Հաշվետու ժամանակաշրջանում ՀամԿ(բ)Պ Կենտկոմին կից Բարձրագույն պարտիական դպրոցը, Հասարակական գիտությունների ակադեմիան և Բարձրագույն պարտիական դպրոցի հեռակա բաժանմունքը ավարտել են 31 մարդ։ Ներկայումս այդ ուսումնական հաստատություններում սովորում են 24 մարդ և Բարձրագույն պարտիական դպրոցի հեռակա բաժանմունքում՝ 76 մարդ։ Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմին կից երկամյա պարտիական դպրոցը ավարտել են 246 մարդ և ներկայումս այնտեղ սովորում են 209 մարդ։ Ուսումն ավարտածների գերակշռող մեծամասնությունը ուղարկված է պարտիական աշխատանքի։

1951—1952 թ. թ. ձմռանը կազմակերպվեցին կոլտնտեսային պարտկազմակերպությունների քարտուղարների մեկամսյա դասընթացներ, որտեղ ուսուցումն անցան 201 մարդ։

Ռեսպուբլիկայի ղեկավար կադրերի պատրաստման և աճեցման գործում մեծ նշանակություն կունենա օկրու-

գային պարտիական-սովետական օրգանների ստեղծումը։ Մինչև այժմ գոյություն ուներ աննորմալ մի դրություն, երբ շրջանային աշխատողները, ինչպես էլ որ նրանք աչքի ընկնեին աշխատանքի մեջ, դժվարությամբ էին կարողանում ղեկավար աշխատանքի անցնել ռեսպուբլիկական պարտիական ու սովետական օրգաններում։ Շրջանային աշխատանքի մասշտաբը աշխատողներին բավականաչափ փորձ չէր տալիս նրանց իբրև ռեսպուբլիկական օրգանների ղեկավարներ, մասնավորապես կենտկոմում աշխատանքի առաջ քաշելու համար։

Օկրուգների կազմակերպման և օկրուգային պարտիական ու սովետական օրգանների ստեղծման նշանակությունն այն է, որ դրանով նորմալ պայմաններ են ստեղծվում ռեսպուբլիկական պարտիական ու սովետական օրգանների կադրերի աճման համար։

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը հաշվետու ժամանակաշրջանում մեծ ուշադրություն է նվիրել ղեկավար կադ-



րերի ընտրությանը։ Ուղղվել է այն աննորմալ երևույթը, երբ որոշ աշխատողներ երկար ժամանակ նստում էին շրջկոմի քարտուղարի պաշտոնում, ընտելանում էին աշխատանքում եղած թերությունների հետ, շրջանի ղեկավար աշխատողների միջև բացակայում էին պարտիական նորմալ հարաբերությունները և չկար ինքնաքննադատական մոտեցում դեպի իր աշխատանքը։ Այսպիսի դրություն տեղ էր գտել Արտաշատի, Աշտարակի, Մեղրու, Սպիտակի և այլ շրջաններում։ Ներկայումս կան պարտիայի շրջկոմների միայն երկու առաջին քարտուղարներ, որոնք միևնույն տեղում աշխատում են երեք տարուց ավելի. դրանք Բասարգեչարի և Թալինի շրջկոմների քարտուղարներն են։

Կադրերի առաջքաշման ժամանակ Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը խստորեն հետևել և պահանջել է պարտիական կազմակերպություններից՝ ճշգրիտ կերպով իրականացնել ՀամԿ(բ)Պ Կենտկոմի ցուցումը՝ ղեկավար աշխատանքի առաջ քաշել նախկին աշխատանքում տապալված մարդկանց։

Սակայն որոշ պարտիական կազմակերպություններ կադրերի առաջքաշման հարցում թույլ էին տալիս պարտիայի դիրեկտիվների խեղաթյուրում։ Մեղրու, Ղուկասյանի, Արթիկի և Բասարգեչարի շրջաններում պարտիայի շրջկոմները խախտում էին պարտիական սկզբունքը կադրերի ընտրության ու դասավորման գործում և շարունակում էին աշխատանքի մեջ տապալված մարդկանց մեկ պատասխանատու աշխատանքից փոխադրել մեկ ուրիշ պատասխանատու աշխատանքի։

Այդ խախտումները ամենից ավելի այլանդակ ձև էին ստացել Լենինականի պարտիական կազմակերպության աշխատանքում, որտեղ պարտիայի քաղկոմը այն ժամանակ, երբ նրա առաջին քարտուղարն էր ընկ. Ղ. Բարսեղյանը, սովետա-տնտեսական օրգանների ղեկավար պոստերում տեղադրել էր աշխատանքի մեջ բազմիցս տապալված և պարտիական կազմակերպության վստահությունը չվայելող աշխատողների։

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը ըս-



տիպված եղավ հեռացնել պարտիայի Լենինականի քաղաքային կոմիտեի ղեկավարությունը, որը չէր կատարել պարտիայի դիրեկտիվները կադրերի ընտրության և դասավորման մասին։

Կադրերի ընտրության և դասավորման գործում կոպիտ սխալներ էին թույլ տրվել նաև Գորիսի պարտիական կազմակերպությունում, որտեղ շրջկոմի նախկին առաջին քարտուղար ընկ. Խաչատրյանը աշխատողներին ղեկավար պոստերի էր նշանակում հայրենակցական հատկանիշով, գերազանցապես Տեղ գյուղացիներին, որտեղացի է նաև ինքը, նրանց պաշտպանում էր քննադատությունից, երբ նրանք պարտիական ու պետական կարգապահության խախտումներ էին թույլ տալիս։

Հայրենակցության հատկանիշով կադրերի առաջքաշում դեռ վերջերս էլ տեղի ուներ նաև Ղափանի շրջանում, որտեղ ղեկավար աշխատանքի էին առաջ քաշվում գերազանցապես կամ կավարտցիները, կամ վաչագանցիները։

Նույնպիսի փաստեր տեղի են ունե-

ցել նաև մի քանի այլ շրջաններում, որտեղ կադրերի ընտրության ու դասավորման պարտիական սկզբունքը փոխարինվել էր հայրենակցության և մտերմական հարաբերությունների սկզբունքով։

Առաջ քաշվող կադրերի ուսումնասիրման գործում մակերեսային, թեթևամիտ վերաբերմունք էր թույլատրվել նաև Կիրովականի շրջանային պարտիական կազմակերպությունում, որտեղ պարտիայի շրջկոմը իբրև ղեկավարներ առաջ էր քաշում պատահական, վստահություն չվայելող մարդկանց։

Այս բոլոր դեպքերում Կենտրոնական Կոմիտեն հարկադրված է եղել անմիջականորեն միջամտել և ուղղել կադրերի ընտրության ու դասավորման պարտիական սկզբունքի մեջ թույլ տրվող խեղաթյուրումները։

Պարտիական կազմակերպությունների և, առաջին հերթին, Կենտրոնական Կոմիտեի աշխատանքում վերջին տարիներին մեծ տեղ են գրավել կադրերի բոլշևիկյան դաստիարակության հարցերը։



Տարեցտարի բարձրանում է պարտիական կազմակերպությունների պահանջկոտությունը պարտիայի բոլոր անդամների և այդ թվում ղեկավար աշխատողների նկատմամբ՝ պարտիական որոշումների կատարման և պետական շահերի պահպանման գործում։ Դրա հետևանքով ուժեղ հարված է հասցված այն որոշ ղեկավարների տրամադրություններին, որոնք գտնում էին, թե պարտիական ու պետական խիստ կարգապահությունը գոյություն ունի ոչ թե իրենց, այլ շարքային աշխատողների համար։

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը այդ բոլոր դեպքերում ելել է կադրերի բոլշևիկյան դաստիարակության ստալինյան սկզբունքից, որ կադրերը պետք է դաստիարակել իրենց սեփական սխալների հիման վրա, պարտիայի անդամների վարքագիծն ու արարքները գնահատելով անկախ նրանց գրաված պոստից և անցյալի ծառայություններից։

15-րդ համագումարից հետո անցած ժամանակաշրջանում պարտիայից վտարվել են մի շարք կոմունիստներ,

որոնք թույլ են տվել պարտիական կամ պետական կարգապահության խախտում, հանցավոր-անփույթ վերաբերմունք դեպի աշխատանքը և վնաս էին հասցրել պետությանը, պարտիայի հանդեպ եղել էին ոչ-անկեղծ, ձեռք էին բարձրացրել սոցիալիստական սեփականության վրա, խախտել էին Գյուղատնտեսական արտելի կանոնադրությունը և կատարել այլ զանցանքներ, որոնք անհամատեղելի են պարտիայի շարքերում գտնվելու հետ։

Սոցիալիստական սեփականության պաշտպանության և Գյուղատնտեսական արտելի կանոնադրության պահպանման հարցերը Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի պլենումներում քննարկվելուց հետո, պարտիական կազմակերպությունները սկսեցին ավելի խստորեն մոտենալ կոմունիստների այնպիսի զանցանքներին, որոնք կապված են Գյուղատնտեսական արտելի կանոնադրության խախտման հետ, սկըսեցին սովետական, տնտեսական ու կոոպերատիվ կազմակերպությունների ղեկավարներից պահանջել ավելի մեծ պատասխանատվություն հանրա-



յին սեփականության պահպանման համար։

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի բյուրոն, ելնելով պարտիական ու պետական կարգապահության խախտումների դեմ պայքարն ուժեղացնելու անհրաժեշտության մասին Կենտկոմի պլենումի դիրեկտիվներից, պատասխանատվության ենթարկեց Թեթև արդյունաբերության մինիստր ընկ. Դարբինյանին՝ մինիստրության մեջ պետական կարգապահության խախտման և ապարատը անարժան մարդկանցով խճողելու համար։ Նա հանվեց աշխատանքից։

Տեխնիկական շահագործման կանոնները սիստեմատիկաբար խախտելու, երթևեկության անվտանգությունն ապահովելու վերաբերյալ հրամանները անտեսելու և իր պաշտոնեական դիրքը անձնական նպատակներով օգտագործելու համար Անդըրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքի պետ Նավասարդովը հանվեց աշխատանքից և վտարվեց պարտիայից։

Առևտրի մինիստր ընկ. Ռ. Քալան-

թարը, խախտելով սովետական ա-
ռևարի կանոնները, բարձրորակ ապ-
րանքները սիստեմատիկաբար պահում
էր և, առանց խանութների բաց ցան-
ցին հանձնելու, հենց պահեստներից
տոմսակներով բաց էր թողնում իր
ծանոթներին ու մտերիմներին։ Սովե-
տական օրենքների այդ կոպիտ
խախտման համար նա ազատվեց մի-
նիստրի պաշտոնից և ուղարկվեց ա-
վելի ցածր աշխատանքի։
Վերջին ժամանակներս առանձին
ղեկավար աշխատողների կողմից տե-
ղի են ունեցել նաև պարտիական
կարգապահության կոպիտ խախտում-
ներ։ Այս տեսակետից բնորոշ է Մա-
տենադարանի դիրեկտոր Գ. Աբովյա-
նի (Աբովի) վարմունքը։ Աբովի ան-
դիսցիպլինարությունը այնտեղ հա-
սավ, որ նա հրաժարվեց կատարել
Կենտրոնական Կոմիտեի կարևոր
հանձնարարությունը, որի համար
Կենտրոնական Կոմիտեն նրան վտա-
րեց պարտիայից, իսկ Մինիստրների
Սովետը նրան հանեց Մատենադարա-
նի դիրեկտորի աշխատանքից։
Անդրկովկասյան երկաթուղու Երևա-



նի բաժանմունքի քաղբաժնի պետ Ամատունին աշխատանքից հանվեց և պարտիայի շարքերից վտարվեց կադրերի ընտրության վերաբերյալ պարտիայի դիրեկտիվները խախտելու և քաղբաժնի պետի իրավունքները չարաշահելու համար։

Պատասխանատվության են ենթարկվել նաև մի քանի ուրիշ ղեկավար աշխատողներ, որոնք իրենց աշխատանքի մեջ թույլ էին տալիս սովետական օրենքների խախտումներ և դրանց անտեսում։

Սովետական օրենքների խախտում թույլ էր տրվել նաև Կենտկոմի երկրորդ քարտուղար Հ. Պողոսովի կողմից, որն իր պաշտոնեական դիրքը օգտագործել էր շահադիտական նպատակներով, դրա համար Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը նրան հանեց Կենտկոմի քարտուղարի պոստից, իսկ ՀամԿ(բ)Պ Կենտկոմին կից Պարտիական վերահսկողության հանձնաժողովի որոշմամբ նա վտարվեց պարտիայից իբրև բարոյապես քայքայված։

Անհրաժեշտ է նաև մատնանշել, որ

մի քանի պատասխանատու աշխա-
տողներ, ինչպես ընկ. ընկ. Ա. Փի-
րուզյանը, Ի. Սոչինսկին, Զ. Գալստ-
յանը, Ա. Բաբայանը թույլ են տվել
ոչ-պարտիական վարմունք, երբ գի-
տենալով Հ. Պողոսովի արարքների
մասին, տեղյակ չեն պահել Հայաս-
տանի Կ(բ)Պ Կենտկոմին, որի համար
նրանք պատասխանատվության են-
թարկվեցին։

Պարտիական կազմակերպություն-
ները պետք է է՛լ ավելի բարձրացնեն
պահանջկոտությունը պարտիայի բո-
լոր անդամների կողմից պարտիական
ու պետական կարգապահությունն ան-
շեղորեն պահպանելու գործում, ան-
կախ նրանց գրաված պոստից։

Միայն այս դեպքում կարող է ա-
պահովվել կադրերի բոլշևիկյան դաս-
տիարակության ստալինյան սկզբունք-
ների կենսագործումը։

Կադրերի բոլշևիկյան դաստիարա-
կության ուղղությամբ պարտիական
կազմակերպությունների աշխատանքի
մյուս կարևոր հարցը նրանց դաս-
տիարակությունն է մեր երկրի ժողո-
վուրդների միջև ստալինյան բարեկա-



մության ոգով։ Հայաստանի պար-
տիական կազմակերպությունները
պետք է ուժեղացնեն աշխատանքը
Անդրկովկասի եղբայրական ժողո-
վուրդների միջև բարեկամությունն է՛լ
ավելի ամրապնդելու ուղղությամբ,
ընդարձակելով հաղորդակցումն ու
փորձի փոխանակությունը գիտության,
գրականության ու արվեստի բնագա-
վառում և եղբայրական ռեսպուբլիկա-
ների նվաճումների ուսումնասիրու-
թյունը։

Այս խնդիրը հաջողությամբ կլուծ-
վի այն դեպքում, եթե պարտիական
կազմակերպությունները անողոք պայ-
քար մղեն նացիոնալիզմի ռեցիդիվնե-
րի և ազգային սահմանափակության
դրսևորումների դեմ։ Մեր երկրի ժո-
ղովուրդների միջև անխախտ բարե-
կամության ոգով աշխատավորների
դաստիարակությունն ուժեղացնելու
գործում պարտիական կազմակերպու-
թյունները պետք է հաշվի առնեն այն
նոր պայմանները, որոնք ստեղծվել են
Սովետական Միության բոլոր ժողո-
վուրդների կողմից կոմունիզմի մեծ
կառույցների իրականացման հետե-

վանքով, կառուցումներ, որոնց խան-
դավառությամբ մասնակցում են Սո-
վետական Հայաստանի աշխատավոր-
ները։
Այն ձեռնարկությունների, գիտա-
կան հիմնարկների և այլ կազմակեր-
պությունների կոլեկտիվները, որոնք
ակտիվ կերպով մասնակցում են կո-
մունիզմի կառույցների շինարարու-
թյանը, այդ կառույցները համարում
են իրենց հարազատ գործը, պարզ
գիտակցելով, որ այդ կառույցների ա-
վարտումը կապահովի ամբողջ սովե-
տական ժողովրդի նյութական բարե-
կեցության նոր վերելքը։ Այդ երևույթը
չափազանց կարևոր դեր խաղաց ազ-
գային պարփակվածության՝ դեռ գո-
յություն ունեցող մնացուկների հաղ-
թահարման գործում։ Պարտիական
կազմակերպությունները պետք է այդ
նորը օգտագործեն Սովետական Միու-
թյան ժողովուրդների միջև բարեկա-
մությունն ամրապնդելու և աշխատա-
վորների ինտերնացիոնալ դաստիա-
րակությունն ուժեղացնելու ուղղու-
թյամբ կատարվող իրենց աշխատան-
քում։



Ես կցանկանայի հատկապես կանգ առնել պարտիական կազմակերպությունների աշխատանքում եղած երկու թերությունների վրա, որոնք կարևոր սկզբունքային նշանակություն ունեն աշխատավորների մեջ սոցիալիստական գիտակցականություն դաստիարակելու համար. դրանք դեպի աշխատանքը կոմունիստական վերաբերմունքի և դեպի հանրային սեփականությունը սոցիալիստական վերաբերմունքի հարցերն են։

Չնայած այն մեծ աշխատանքին, որ մեր պարտիական կազմակերպությունները կատարում են ձեռնարկություններում, կոլտնտեսություններում և սովխոզներում աշխատանքի կազմակերպման ու սոցիալիստական մրցության բնագավառում, այնուամենայնիվ, պարտիական կազմակերպությունների մեծամասնությունը խոշոր թերություններ ունի այդ աշխատանքում։

Այդ թերություններն այն են, որ պարտիական կազմակերպությունները հաճախ չեն ապահովում աշխատավորների կոմունիստական դաստիա-

րակության խնդիրների պրակտիկ լու-
ծումը։ Այս տեսակետից բնորոշ օրի-
նակ է հանդիսանում արդյունաբերա-
կան ձեռնարկություններում, երկա-
թուղային տրանսպորտում և շինա-
րարություններում աշխատանքային
կարգապահության խախտումներին
սկզբնական պարտիական կազմակեր-
պությունների կողմից ցույց տրվող
վերաբերմունքը։ Կոշիկի № 1 ֆաբ-
րիկայի սկզբնական պարտիական
կազմակերպությունն անտեսեց այն
փաստը, որ 1952 թվականին ֆաբրի-
կայում աշխատանքային կարգապա-
հության խախտումների թիվը եռա-
պատկվել է, եթե 1951 թվականի ա-
ռաջին կիսամյակում աշխատանքային
կարգապահության խախտման 5 դեպք
է եղել, ապա ընթացիկ տարվա ա-
ռաջին կիսամյակում այդպիսի խախ-
տումների թիվը հասավ 18-ի։ Երևան
քաղաքի կարի առաջին ֆաբրիկայում
այդ նույն ժամանակամիջոցում եղել
է 21 խախտում, որը հասել է 59-ի։
Սննդի արդյունաբերության մինիստ-
րության ձեռնարկություններում 1951
թվականի առաջին կիսամյակում եղել



է աշխատանքային կարգապահության խախտման 29 դեպք, 1952 թվականի առաջին կիսամյակում այդպիսի դեպքերի թիվը հասել է 55-ի։

Աշխատանքային կարգապահության խախտումների որոշ աճ տեղի ունի նաև Անդրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքում, չնայած որ աշխատանքային կարգապահությունը խախտողները մեծ թիվ չեն կազմում։ Սակայն նույնիսկ այդ բանի առկայությունը քայքայիչ ներգործություն է ունենում աշխատանքային կարգապահության վիճակի վրա, արդարացի կշտամբանքներ առաջացնելով բարեխղճորեն աշխատող բանվորների կողմից։

Արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունները ժամանակին հասարակական ներգործման միջոցներ ձեռք չեն առնում աշխատանքային կարգապահությունը խախտողների նկատմամբ և մի՛շտ չեն պարզ պատկերացնում, որ աշխատանքային կարգապահության խախտման այդպիսի փաստերի առկայությունը խանգարում է աշխատա-

վորների մեջ դեպի աշխատանքը սո-
ցիալիստական վերաբերմունքի զգաց-
մունք դաստիարակելու գործին։
Ավելի լուրջ թերություններ գոյու-
թյուն ունեն կոլտնտեսությունների
պարտիական կազմակերպությունների
գործունեության մեջ՝ աշխատանքի
կազմակերպման և կոլտնտեսականնե-
րի շրջանում աշխատանքային կար-
գապահությունը բարձրացնելու աս-
պարեզում։ Բավական է միայն ասել,
որ Հայաստանի բոլոր կոլտնտեսու-
թյուններում, չնայած աշխօրերի տա-
րեկան միջին թվի ընդհանուր աճին,
կոլտնտեսականների 18 տոկոսը չի
կատարել աշխօրերի սահմանված մի-
նիմումը։ Առանձին շրջաններում դրու-
թյունն ավելի վատ է։ Օրինակ, Ար-
տաշատի շրջանի կոլտնտեսություննե-
րում աշխատունակ կոլտնտեսական-
ների 35 տոկոսը չի կատարել աշ-
խօրերի մինիմումը։ Արթիկի շրջանի
կոլտնտեսություններում աշխօրերի
մինիմումը չի կատարել աշխատու-
նակ կոլտնտեսականների 31 տոկոսը,
Ջանգիբասարի շրջանի կոլտնտեսու-
թյուններում՝ 32 տոկոսը, Կալինինոյի



շրջանի կոլտնտեսություններում՝ 25 տոկոսը, Մարտունու շրջանի կոլտըն-տեսություններում՝ 23 տոկոսը։ Առանձին կոլտնտեսություններում դրությունն ավելի վատ է։ Օրինակ, Արտաշատի շրջանի Այգեստան գյուղի կոլտնտեսությունում աշխօրերի մինիմումը կատարած կոլտնտեսականների թիվը հասնում է 50 տոկոսի, Արթիկի շրջանի Հառիճ գյուղի կոլտնտեսությունում՝ 40 տոկոսի։

Կոլտնտեսություններում աշխատանքային կարգապահության խախտումը երևան է գալիս նաև այն բանի մեջ, որ կոլտնտեսականները ուշ են դուրս գալիս դաշտային աշխատանքների, որը բացասաբար է անդրադառնում իրենց իսկ՝ կոլտնտեսականների բարեկեցության վրա։ Այս տեսակետից բնորոշ են Վեդու շրջանի մի շարք կոլտնտեսություններ։

Գյուղական շրջանների մեծամասնության պարտիական կազմակերպությունները և պարտիայի շրջկոմները թերագնահատում են անցյալի այդ մնացուկները վերացնելու նպատակով

դաստիարակչական աշխատանքն ուժեղացնելու կարևորությունը։

Այսպիսով, հաշվետու ժամանակաշրջանում պարտիական կազմակերպությունների աշխատանքի խոշոր թերություններից մեկը շարունակում է մնալ այն, որ բացակայում է ամենօրյա դաստիարակչական աշխատանքը աշխատավորների մեջ դեպի աշխատանքը գիտակից, կոմունիստական վերաբերմունքի զգացմունք դաստիարակելու ուղղությամբ և որ այդ աշխատանքը չի կապակցվում այն կարևոր խնդիրների հետ, որոնք պարտիական կազմակերպությունները առաջադրել են սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում։

Աշխատավորների մեջ քաղաքական-դաստիարակչական աշխատանք կատարելու բնագավառում մեր ամբողջ գործունեությունը ինչպես քաղաքում, այնպես էլ գյուղում, պետք է ուղղված լինի դեպի աշխատանքը նոր, կոմունիստական վերաբերմունք դաստիարակելու նպատակին։

Պարտիական կազմակերպություն-



ների գործունեության մեջ մյուս թերությունն այն է, որ դեռևս անբավարար է սոցիալիստական սեփականության անձեռնմխելիության զգացմունք դաստիարակելու ուղղությամբ աշխատավորների շրջանում կատարվող մասսայական-քաղաքական աշխատանքի դրվածքը։ Այս հարցում պարտիական կազմակերպությունների ագիտացիոն-մասսայական աշխատանքի թերությունն է այն, որ այդ աշխատանքը կրում է ոչ կոնկրետ բնույթ ու չի հենվում տվյալ ձեռնարկության, կոլտնտեսության, սովխոզի կյանքից վերցված տեղական փաստերի վրա և դրա համար էլ այդ աշխատանքը չի տալիս հարկ եղած արդյունքը։

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի պլենումը, քննության առնելով այդ հարցը, պարտիական կազմակերպությունների աշխատանքն այս բնագավառում գտավ անբավարար։ Պարտիական կազմակերպությունների մեծամասնությունը մինչև վերջին ժամանակներս անբավարար պայքար էր մղում հիմնարկներում ու տնտեսական կազմակերպություններում պետական սեփա-

կանության վրա ձեռք բարձրացնելու դեպքերի և կոլտնտեսություններում հանրային հարստության վատնման ու շռայլման փաստերի դեմ։

Պարտիական կազմակերպություն-ների հետագա աշխատանքի մեջ պետք է ամենուրեք ուժեղացվի աշխատա-վորների շրջանում կատարվող դաս-տիարակչական աշխատանքը և պարտիական կազմակերպությունները պետք է ելնեն այն բանից, որ հարկա-վոր է մինչև յուրաքանչյուր սովետա-կան մարդուն հասցնել հանրային սե-փականության անխախտության ու ան-ձեռնմխելիության հասկացողությունը, սեփականություն, որը սոցիալիստա-կան հասարակարգի հիմքն է հան-դիսանում։

Էլ ավելի պետք է ուժեղացվի բո-լոր պարտիական, սովետական ու այլ կազմակերպությունների պայքա-րը հանրային սեփականության նկատ-մամբ ոտնձգության բոլոր դեպքերի դեմ, իր օգտին պետությունից ավելի շատ պոկելու փորձերի դեմ։

Պարտիական կազմակերպություն-ների աշխատանքում իմ մատնանշած



թերությունները կարող էին ժամանակին ու լրիվին վերացվել, եթե ղեկավար կադրերի մի մասի մեջ գոյություն չունենային բարեհոգության և պարադային բարեհաջողության տրամադրություններ, որոնք հենվում են այն սխալ պատկերացման վրա, թե երկրում ձեռք բերված հսկայական հաջողությունները բացառում են խոշոր թերությունների ու բացասական կողմերի գոյությունը աշխատանքում։ Այդ տրամադրությունները հիմնվում են մեր կյանքը լավ չիմանալու և դեմ առ դեմ թերություններին նայելու երկյուղի վրա։

Հայտնի է, որ վիթխարի հաջողությունների կողքին տնտեսական և կուլտուրական շինարարության տարբեր բնագավառներում դեռևս կան թերություններ ու բացասական կողմեր, և որ կոմունիստական հասարակարգի մեր ողջ շինարարությունը տեղի է ունենում այդ բացասական երևույթների դեմ պայքարի պայմաններում։

Պարադային բարեհաջողության տրամադրությունները հատուկ են այն կոմունիստներին, որոնք իրենք են

են մնում, վատ են աշխատում և իրենց ետ մնալը ուզում են քողարկել մեր երկրում եղած մեծ հաջողություններով։ Այդ տրամադրությունների վրնասակարությունն այն է, որ այդպիսի տրամադրությունների կրողները իրենք հաշտվում են թերությունների հետ և միևնույն ժամանակ մյուսների մեջ էլ թուլացնում են գոյություն ունեցող թերություններին վերջ դնելու ձգտումը։

Այդ պատճառով էլ մեր հասարակության զարգացման գործում մեծագույն ուժ են հանդիսանում քննադատությունն ու ինքնաքննադատությունը, որոնք ուղղված են մեր աշխատանքի պրակտիկայում գոյություն ունեցող սխալներն ու թերությունները բացահայտելու և վերացնելու նպատակին։

Դրանից ելնելով, Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը պարտիայի օկրուգային կոմիտեներից, քաղաքային կոմիտեներից ու շրջանային կոմիտեներից պահանջեց ամեն կերպ զարգացնել քննադատությունն ու ինքնաքննադատությունը։

Պարտիական կազմակերպություննե-



րի ներսում քննադատության և ինքնաքննադատության վիճակը գնահատելիս չի կարելի չհիշեցնել քննադատության անբարեհաջող վիճակը Լենինականի պարտիական կազմակերպությունում, որտեղ չէին ունկնդրում առանձին աշխատողների հակապարտիական ու հակապետական արարքների մասին եղած բազմաթիվ ահազանգումներին։ Լենինականի քաղկոմը և նրա նախկին առաջին քարտուղար ընկ. Բարսեղյանը չէին արձագանքում ահազանգումներին և ժամանակին քննության չառան ղեկավար աշխատողների՝ քաղաքային Սովետի նախագահ ընկ. Ս. Վարդանովի, տեղական արդյունաբերության բաժնի վարիչ Պետրոսյանի, կարի ֆաբրիկայի դիրեկտոր Վարդանյանի և ուրիշների հանցագործությունների հարցը։

Արթիկի պարտիական կազմակերպությունում բազմիցս դրվում էր այն հարցը, որ մի քանի աշխատողներ սխալ են առաջ քաշվել, և որ շրջկոմի նախկին քարտուղար Հարությունյանը հարմարվում է առանձին հետամնաց կոմունիստների հետ։ Շրջկոմը չար-

ճագանքեց այդ ահազանգումներին և չունկնդրեց պարտիայի անդամների արդարացի գանգատներին։

Քննադատության վիճակը վատ էր նաև Կիրովականի պարտիական կազմակերպությունում։ Շրջկոմի քարտուղար ընկ. Գ. Պետրոսյանը ոչ միայն չէր ունկնդրում ահազանգումներին, այլև թաքցնում էր շրջկոմում ստացվող դիմումները, որոնց մեջ հաղորդվում էին մի շարք աշխատողների, այդ թվում և շրջկոմի որոշ աշխատողների ոչ պարտիական գործողությունների մասին։

Պարտիական կազմակերպության մեջ քննադատության և ինքնաքննադատության բացակայությամբ միայն կարելի է բացատրել, որ շրջանային մի շարք օրգաններ գլխավորում էին խորթ, չարաշահումներ թույլ տվող մարդիկ։

Քննադատության ծավալմանը խանգարում էին նաև Մեղրու պարտիական կազմակերպությունում։ Պարտիայի շրջկոմը նրա քարտուղար ընկ. Հովհաննիսյանի օրով միջոցներ ձեռք չէր առել շրջանային օրգաններում տեղի ունեցած չարաշահումների դեմ, շրջ-



սովետի գործկոմի նախագահ Մարգարյանի դեմ, որը քողարկում էր շրջանում զանազան ղեկավար պաշտոններում տեղավորված իր ազգականների կատարած չարաշահումները։ Այդ հարցերի վերաբերյալ ստացվող ահազանգումներին շրջկոմը չարձագանքեց, մինչև որ գործին միջամտեց Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը։

Քննադատության վիճակը վատ էր նաև Գյուղատնտեսության մինիստրության պարտկազմակերպությունում։ Արոտամելիորատիվ տրեստում, Շինարարական վարչությունում և մինիստրության այլ վարչություններում կատարվող չարաշահումների վերաբերյալ ահազանգումները մնում էին անհետևանք։ Երբ պարտիայի առանձին անդամներ փորձում էին այդ հարցերն առաջ քաշել պարտիական ժողովներում, նրանք դիմադրության էին հանդիպում Գյուղատնտեսության նախկին մինիստր ընկ. Ղազարյանի կողմից։

Ներկայումս քննադատության վիճակը վատ է նաև Ջրային տնտեսության մինիստրության պարտիական կազմակերպությունում, որը չի արձա-

գանքում և չի քննարկում մինիստրության առանձին ղեկավար աշխատողների աշխատանքի քննադատությանը վերաբերող հարցերը։ Այս մինիստրությունում աշխատանքի քննադատական գնահատության փոխարեն պատվաստվում է հաճոյակատարությունն ու ինքնագովասանքը։ Ջրային տընտեսության մինիստր ընկ. Աղախանյանն ինքը չի նկատում իր թերություններն ու բարեհոգորեն է տրամադրված այն ժամանակ, երբ 1951 թվականի և ընթացիկ տարվա առաջին կիսամյակի կապիտալ աշխատանքների պլանները չեն կատարվել։

Այս բոլոր փաստերը վկայում են, որ եթե ընդհանուր առմամբ պարտիական կազմակերպություններում աշխատանքի թերությունների քննադատությունը ծավալվում էլ է շատ թե քիչ նորմալ կերպով, ապա այդ քննադատությունը առայժմ մեծ մասամբ կրում է վերևից, քան թե ներքևից եկող քննադատության բնույթ։ Այս բանում մեղավոր են այն պարտիական օրգանները, որոնք միջոցներ ձեռք չեն առնում ստացվող ահա-



զանգումներին ժամանակին արձագանքելու համար, ժամանակին քըննության չեն առնում այդ ահազանգումները և ձեռնարկված միջոցների մասին տեղյակ չեն դարձնում պարտիական կազմակերպություններին։

Ներքևից եկող քննպդատության ծավալմանը խանգարում է նաև այն հանգամանքը, որ դեռևս շարունակում է գոյություն ունենալ այնպիսի դրություն, երբ քննադատությունը լսում են, ձևականորեն ընդունում, բայց հայտնաբերված թերություններն ուղղելու համար միջոցներ ձեռք չեն առնում։

Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ լիկվիդացիայի ենթարկել քննադատությունն ու ինքնաքննադատությունը ծավալելու գործում եղած այս թերությունները, բոլոր միջոցներով ծավալել ներքևից եկող քննադատությունը, ժամանակին ընթացք տալ այն հարցերին, որոնք պարտիական, սովետական ու տընտեսական օրգանների աշխատանքում եղած թերություններին են վերաբերում, մեր կադրերի մեջ անդուլ կեր-

պով դաստիարակել աշխատանքում եղած թերությունների նկատմամբ անհաշտության զգացմունք, պայքար մղելով բարեհոգության և պարադային բարեհաջողության տրամադրության երևույթների դեմ։

Պարտիական կազմակերպությունների նախաձեռնությունն ու ինքնագործունեությունը զարգացնելու, ինչպես նաև ՀամԿ(բ)Պ Կանոնադրությամբ պարտիայի անդամներին տրրված իրավունքներն իրականացնելու գործում կարևոր դեր է խաղում ներպարտիական դեմոկրատիայի սկզբունքների ճշգրիտ պահպանումը և պարտիական լայն մասսաների ներգրավումը պարտիայի դիրեկտիվների իրականացման գործում։

Հայաստանի Կ(բ)Պ 15-րդ համագումարից հետո Կենտկոմի, օկրուգային կոմիտեների, քաղկոմների և շրջկոմների պլենումները սկսել են հրավիրվել ավելի հաճախակի և այդտեղ քննության են առնվում պարտիական կազմակերպությունների կյանքի կարևորագույն հարցերը։ Շատ պարտիական օրգաններ սկսել են



պլենումների անդամներին ավելի լայնորեն ներգրավել պարտիական օրգանների պլենումներում քննարկվող հարցերի նախապատրաստման գործում։

Վերջին ժամանակներս սկսել է կիրառվել ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի կարևորագույն դիրեկտիվների կատարման ընթացքի մասին պլենումների առջև պարտիական օրգանների բյուրոների հաշվետվությունների պրակտիկան։

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի պլենումները հրավիրվել են կանոնավոր կերպով, երկու ամիսը մեկ անգամ։ 15-րդ համագումարից հետո, 1951 թվականի մարտից մինչև Հայաստանի Կ(բ)Պ 16-րդ համագումարը անցած ժամանակամիջոցում տեղի է ունեցել Կենտկոմի ութ պլենում։

Պահպանվել է նաև պարտիայի քաղկոմների ու շրջկոմների պլենումներ հրավիրելու սահմանված կարգը։ Պլենումների հրավիրման ժամկետները խախտել են պարտիայի Ջանդի-

բասարի, Բերիայի, Միկոյանի, Էջմիածնի և Շամշադինի շրջկոմները։

Ինչպես քաղաքային, այնպես էլ շրջանային պարտիական կազմակերպություններում բարելավվել է պարտիական ակտիվների ժողովների հրավիրումը, որտեղ քննարկման են դրվել տվյալ պարտիական կազմակերպության համար ակտուալ պարտիական ու տնտեսական հարցեր։ Բարելավվել է նաև կոլեգիալությունը պարտիական օրգանների աշխատանքում, ինչպես Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմում, այնպես էլ օկրուգային կոմիտեներում և քաղկոմներում։

Կոլեգիալության սկզբունքների հաճախակի խախտումներ մենք ունենք շրջկոմներում, հատկապես գյուղական շրջկոմներում, որտեղ առաջին քարտուղարները հարցերի լուծման ժամանակ քիչ են հաշվի առնում մյուս քարտուղարների և շրջկոմի բյուրոյի անդամների կարծիքը։ Իբրև կանոն այդպիսի պարտիական օրգաններում գերակշռում է ղեկավարման վարչարարական մեթոդը և շրջանի սովետական ու այլ օրգանների փոխարի-



նումը։ Այս տեսակետից աչքի են ընկել Ազիզբեկովի շրջկոմի նախկին քարտուղար ընկ. Ա. Բաբայանը, Բասարգեչարի շրջկոմի քարտուղար ընկ. Թ. Մուսաևը, Ախտայի շրջկոմի նախկին քարտուղար ընկ. Ա. Սարգսյանը և Ղափանի շրջկոմի նախկին քարտուղար ընկ. Ե. Մելքոնյանը։

Հետագա աշխատանքում պարտիական օրգանները պետք է խստորեն իրագործեն ներպարտիական դեմոկրատիայի սկզբունքները, պլենումների անդամներին ավելի մեծ չափով ներգրավեն պարտիական օրգանների բյուրոների ամենօրյա աշխատանքում, պարտիական ակտիվը ավելի լայնորեն ներգրավելով կարևորագույն հարցերի քննարկման մեջ, ավելի հաճախակի հրավիրելով պարտիական ակտիվի ժողովներ քաղաքներում և շրջաններում։

Սկզբնական պարտիական կազմակերպությունների ավարտված հաշվետու-ընտրական ժողովներն անցան կոմունիստների քաղաքական բարձր ակտիվության պայմաններում։ Հայաստանի կոմունիստական պարտիա-

ցի ամբողջ կազմի 40 տոկոսը հանդես եկավ հաշվետու զեկուցումների շուրջը ծավալված մտքերի փոխանակության ընթացքում, քննադատական գնահատական տալով պարտիական կազմակերպությունների բազմակողմանի գործունեությանը։ Աշխատանքի մեջ եղած թերությունների առողջ քննադատությունը նրանց կողմից՝ պարտիական կազմակերպություններին օգնեց ճիշտ միջոցառումներ նշել պարտիական կազմակերպությունների հետագա ամրապնդման, կյանքի բոլոր կողմերի վրա պարտիական ազդեցության ուժեղացման և պարտիական, սովետական, տնտեսական ու այլ հասարակական կազմակերպությունների աշխատանքում դեռևս գոյություն ունեցող թերությունների վերացման ուղղությամբ։

Պարտիական կազմակերպություններն ավելի ուշադիր ու հանգամանորեն էին մոտենում թեկնածությունների առաջադրմանը պարտիական ղեկավար օրգաններում աշխատելու համար։ Ղեկավար օրգաններում ընտըրվել են առավել պատրաստված ու ակ-



տիվ ընկերներ, որոնք ավելի լավ են հասկանում ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի կողմից պարտիական կազմակերպությունների առջև դրված խնդիրները։

Սկզբնական պարտիական կազմակերպություններում անցկացված ընտրությունների հանրագումարները ցույց տվին Հայաստանի կոմունիստների գաղափարական աճը և համախմբվածությունը պարտիայի ու կառավարության դիրեկտիվների իրականացման համար մղվող պայքարում։

Պարտիայի 19-րդ համագումարի առթիվ ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի հրապարակած նյութերը մեծ հետաքրքրություն են առաջացրել Հայաստանի աշխատավորների մեջ։ Այդ նյութերի լայն քննարկումը պարտիական ժողովներում ու կոնֆերենցիաներում և կոմունիստների կողմից հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ դիրեկտիվների նախագծի առթիվ արվող կոնկրետ առաջարկները ուղղված են մեր սովետական Հայրենիքի հզորությունն է՛լ ավելի ամրա-

պնդելու, 1946 թվականին ընկեր Ստալինի կողմից սովետական ժողովրդի առջև դրված խնդիրների պրակտիկ լուծման ժամկետները կրճատելու, եղած հնարավորությունների առավելագույն չափով օգտագործելու միջոցով շինարարության տեմպերն արագացնելու և մեր արագ առաջընթացին խանգարող թերությունները լիկվիդացնելու նպատակին։

Նյութերի քննարկումը ցույց տվեց, որ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի դիրեկտիվները լիովին արտացոլում են սովետական մարդկանց ձգտումը՝ անշեղորեն ընթանալու դեպի կոմունիզմ։

Պարտիայի փոփոխված Կանոնադրության տեքստի ՀամԿ(բ)Պ Կենտկոմի նախագծի քննարկման ժամանակ կոմունիստների ունեցած ելույթները ցույց տվին, որ կոմունիստները միահամուռ կերպով հավանություն են տալիս պարտիայի գլխավոր խնդիրներին, որոնք առաջադրված են ՀամԿ(բ)Պ Կենտկոմի նախագծում, այն է՝ սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու միջոցով կառուցել կոմունիստական հասարակարգ, ան-



ընդհատ բարձրացնել հասարակության նյութական և կուլտուրական մակարդակը, հասարակության անդամներին դաստիարակել ինտերնացիոնալիզմի և բոլոր երկրների աշխատավորների հետ եղբայրական կապեր հաստատելու ոգով։

Կոմունիստներն ամենուրեք ողջունում են նախագծի մեջ շարադրված՝ պարտիայի անդամների իրավունքների և պարտականությունների հստակ բնորոշումը, դրա մեջ տեսնելով Ստալինյան պահանջկոտություն կոմունիստական պարտիայի անդամների բարոյական բարձր հատկությունների նկատմամբ։

Այն հանգամանքը, որ պարտիայի փոփոխված Կանոնադրության նախագիծը մեծ հետաքրքրությամբ և գոհունակությամբ ընդունվեց անպարտիականների լայն մասսաների կողմից, վկայում է ժողովրդի հետ կոմունիստական պարտիայի սերտ կապերի մասին, այն մասին, որ ամբողջ սովետական ժողովուրդը կենսականորեն շահագրգռված է իր հարազատ պարտիայի, Լենինի—Ստալինի պարտիայի հե-

տագա ամրապնդումով, պարտիայի, որը իր պատմական հաղթանակները ոգեշնչողն ու կազմակերպողն է։

Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիան դեպի Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի 19-րդ համագումարն է ընթանում որպես միասնական ջոկատ, համախմբված Համ. Կ(բ)Պ Կենտկոմի շուրջը, մեծ առաջնորդ և ուսուցիչ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի շուրջը։

(Միասնական ավյունով բոլորը ոտքի են կանգնում, թնդում է օվացիան ի պատիվ Սովետական Միության մեծ Կոմունիստական պարտիայի, ի պատիվ պարտիայի և ժողովուրդների հանճարեղ առաջնորդ ընկեր Ստալինի, որ մեր Հայրենիքը տանում է դեպի կոմունիզմի լուսաշող գագաթները)։

---

Պտ. խմբագրի՝ Մ. Տ. ՔՈՉԱՐՅԱՆ

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении

**БЛОКНОТ АГИТАТОРА**

№ 18 1952 г.